# ՍԻԼՎԻՈՅ ՓԷԼԼԻՔՈՅԻ

## ՅԱՂԱԳՍ

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ՊԱՐՏՈՒՑ





ՎԵՆԵՏԻԿ

*ի տպարանի սրբոյն Ղազարու*

1854

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Սիլվիոյ Փէլլիքոյ հռչակաւոր Իտալացին այն սակաւաթիւ ընտիր մատենագիրներուն մէկն է, որ իրենց գրուածքներուն պարզութեամբն ու անուշութեամբը կարծես թէ աւելի մարդուս սրտին հետ կը խօսին քան թէ մտքին հետ։ Թէ որ Բանտերս իմ ըսուած գիրքը իր ազնուական ու սիրելի հոգւոյն հայելին սեպենք՝ Յաղագս Մարդկային Պարտուց գրքոյկն ալ իրեն ուղիղ վարուցը գաղափարն ու ճշմարիտ և քրիստոնէական փիլիսոփայութեանը գանձն է կրնանք ըսել։

Այս պատուական գանձը ինքը իր ազգին պատանեացը նուիրեր է · մենք ուզեցինք որ մեր ազգին ուսումնասէր պատանիներուն ալ անկէ բաժին հանենք ։ Եւ աւելի անոր համար ալ ուրախութեամբ մը ձեռք զարկինք աս փոքրիկ աշխատանքին, որ մէջի խրատները շատ յարմար կը տեսնանք մեր ժամանակիս ազգային պատանիներուն, որ զանազան դպրոցներու մէջ եւրոպական կրթութեան և լեզուաց ճաշակները սկսած են առնուլ ։

Իտալիոյ նորաբողբոջ որդիքը իրաւամբ երախտագէտ են աս իրենց ազնիւ ազգակցին · իրաւամբ նաև ուրիշ եւրոպացի ազգերը, ինչուան Յոյներն ալ, աս գրքոյկը թարգմանուած ունենալով շնորհակալ կ'ըլլան Փելլիքոյին իր քաղցր ու իմաստուն խրատներուն համար ։ Տարակոյս չունինք որ Հայաստանի

*զաւկըններն ալ աս մեր Թարգմա-
նութիւնը կարդալով՝ անանցմէ վար
պիտի չմընան՝ տուած դաստիարա-
կութեանը հլութեամբ անսալու, և
զինքը բոլոր սրտանց օրհնելու ։*

Հ. Գ. ԱՅՎ.

# ՄԱՏԵՆԱԳԻՐՆ

Այս ճառը մէկ հոգւոյ համար գրուած է. բայց յուսալով որ օգտակար ըլլայ նաև ամէն պատանեաց, ուղեցի հրատարակել։

Ուսումնական ոճով գրուածք մը չէ ասիկայ, և մէջը մարդկային պարտուց վրայ խրթին խնդիրներ չկան։ Ինծի կ'երևնայ թէ բարեկիրթ ու բարեպաշտ ըլլալու պարտականութիւնը ցուցընելու համար ճարտար ու խորունկ ապացոյցներու կարօտութիւն չկայ։ Թէ որ մէկը այնպիսի ապացոյցներն իր խղճմտանքին մէջ չգտնէ, գրքերու մէջ գտնալիք չունի։ Հոս ես պարզ ցանկի մը պէս յիշեր եմ այն պարտքերն որ մարդուս կենացը մէջ դիմացը կ'ելլեն.

ասով հրաւէրք մը միայն ըրեր եմ որ կարգացողները ուշ դնեն այն պարագերուն, և հաստատուն կամ-քով մը անոնց գործադրութեանն ետևէ ըլլան ։

Որչափ որ կարելի է՝ խելք ծա-խելէն աղուոր ոճեր բանեցընելէն հեռու կենալ ուզեցի, գիտնալով որ աս նիւթիս մէջ հարկաւորն է ամե-նապարզ յստակութիւն ։

Ո՛վ իմ հայրենակից պատանինե-րը, ձեզի կը նուիրեմ ես աս հատո-րիկը, և փափաքս ան է որ ասիկայ խթան մը սեպուի ձեզի առաքինու-թեան ետևէ ըլլալու, և ձեր եր-ջանկութեան մէկ պատճառն ալ աս ըլլայ ։





# ԳԼՈՒԽ Ա.

Պարգեւին հարկաւորութիւնն ու պարտաւորութիւնը:

Պարտք ըսածդ այնպիսի բան է որ մարդս ոչ երբէք կրնայ մտքէն հանել, և ուզէ չուզէ անոր հարկաւորութիւնը կը ճանչնայ: Պարտքը մարդուս բնութենէն զատելը անկարելի բան է. ասոր մեր խղճմտանքն ալ կը վկայէ՝ խելքերնիս բացուած չբացուած, խելքերնիս բացուելէն ետքը ալ, անկէց ետքը հետզհետէ ալ աւելի: Մեզմէ դուրս գտնուած բաներն ալ նոյնպէս կը վկայեն. վասն զի մեկ յաւիտենական սքանչելի օրէնք մը կայ որով կը կառավարուի ամէն բան, և ամէն բանի մէջ ալ այնպիսի վախճան մը կայ որ ամէնն ալ կը միաբանին՝ Աստուծոյ (որ ամէն բանի սկիզբն

ու վախճանն է ) իմաստութիւնը ցուցընելու և կամքը կատարելու ։

Մարդս ալ մէկ վախճանի մը համար ստեղծուած է. ուրեմն պէտք է այնպէս ըլլայ՝ ինչպէս որ պարտական է ըլլալու. չէ նէ ոչ ուրիշները համարում կ՚ունենան վրան և ոչ ինքը. ուստի չկրնար երջանիկ ըլլալ։ Մարդուս բնական է երջանկութեան փափաքիլ, և միանգամայն հասկընալ ու հասկցընել թէ երջանկութեան չհասնիր առանց լաւ մարդ ըլլալու. այսինքն առանց այնպիսի մարդ ըլլալու՝ ինչպէս որ կը պահանջէ իր օգուտը, ախեղերաց կարգը և Աստուծոյ դիտաւորութիւնը ։

Կիրքերնիս բռընկած ատենը մեզի անանկ կու գայ որ օգտակար համարինք այն բանն որ հակառակ է ուրիշի օգտին և կամ ընդհանուր բարեկարգութեան. բայց մաքերնիս չհամոզուիր, խղճմտանքնիս չէ կը կանչէ ։ Իսկ կիրքը դադրելէն ետև այն ամենայն բանն որ ուրիշի շահուն և կամ կարգի կանոնի դէմ է՝ շատ զզուելի կ՚ըլլայ մեզի ։

Մեր օգտին համար այնչափ հարկաւոր է պարտուց կատարումն որ ինչուան զանազան ցաւերն ու նաև մահն ալ, որ մարդուս անմիջական վնասները կը համարուին, հեշտալի բաներ կը դառնան այն առաքինի մարդուն համար որ կը չարչարուի կամ կը մեռնի՝ ուրիշի օգուտ մը ընելու և կամ Արարչին երկրպագելի կամացը հպատակելու մտքով :

Ուրեմն թէ պարտք ըսելը և թէ միանգամայն Երջանկութիւն ըսելը ուրիշ բան չէ, բայց եթէ այնպիսի մարդ ըլլալ՝ ինչպէս որ պարտական ենք ըլլալու : Սուրբ հաւատքն ալ աս վսեմ ճշմարտութիւնը կը բացատրէ այն խօսքովը որ կ'ըսէ, թէ մարդս ըստ պատկերի Աստուծոյ ստեղծուած է : Իրեն պարտքն ու երջանկութիւնն է Աստուծոյ պատկերին ըլլալ, չուզել ուրիշ բան ըլլալ, և ուզել բարի ըլլալ՝ որովհետև Աստուած բարի է, և մարդուս վախճան որոշեր է՝ ամէն տեսակ առաքինութեան հասնիլ ու իրեն հետ միանալ :

# ԳԼՈՒԽ Բ.

## Սէր ճշմարտութեան։

Մեր պարտքերուն առաջինն է՝ ճշմարտութիւնը սիրել և անոր հաւատալ։

Ճշմարտութիւնն է Աստուած. զԱստուած սիրելն ու ճշմարտութիւնը սիրելը մի և նոյն բանն է։

Զօրացիր, սիրելի, ճշմարտութիւնը սիրելու, և չխաբուելու այն մաղձոտ ու կատաղի իմաստակներուն սուտ ճարտասանութենէն որ կը ջանան ամէն բանի վրայ սիրտ կոտրող տարակոյսներ հանելու։

Խելքը ամենեւին բանի չիգար, մանաւանդ թէ վնաս ալ կ'ընէ, երբոր գործածուի ճշմարտութիւնը կործանելու, վար զարնելու, և իրարմէ ցած ենթադրութիւններ կամ կարծիքներ հաստատելու. երբոր աս աշխարհիս մէջի չարիքներուն վրայ յուսահատական խոր-

հրդածութիւններ ընելով՝ չընդ-
ունիր որ կեանքը աղէկ բան ըլլայ.
երբոր աշխարհիս մէկ քանի ա-
երեւոյթ անկարգութիւնները միայն
քովէ քով շարելով չուզեր տեսնել
Թէ ինչ կարգաւորութիւն կայ մէ-
ջը. երբոր յայտնի ապացոյցներով
ու մարմնոց մեռնիլն ալ տեսնելով
չուզեր հաւտալ Թէ ես մը այսինքն
հոգի մը կայ բոլորովին աննիւթ ու
անմահ. երբոր առաքինութեան ու
մոլութեան մէջ եղած տարբերու-
Թիւնը երազ կը համարի. երբոր
զմարդը անբանի տեղ կը դնէ ու ա-
մենեւին աստուածային բան մը չու-
զեր ընդունել վրան ։

Թէ որ մարդս ու արարածները
այնչափ գարշելի ու անարգ բաներ
ըլլային, ինչ հարկ կար ատեն կոր-
սնցունել ու նստիլ աղէկ աղէկ բա-
ներ մտածել. պէտք էր որ ամէն
մարդ ինքզինքը մեռցնէր ազատէր.
խելքին սորվեցուցածը աս միայն
պիտի ըլլար ։

Բայց որովհետեւ խղճմտանքը ա-
մենուս խորհուրդ կու տայ որ ա-

պրծինք (քանի մը տկարամիտներուն խօսքէն բան չմ՛ըլլեր), որովհետև անոր համար կ՚ապրինք որ բարւոյն փափաքինք, որովհետև յայտնի կը տեսնենք որ մարդուս բարին այն է՝ որ չէ՛ թէ ցածութեամբ որդերուն ճճիներուն հաւասարի, հապա ազնուանայ ու առ Աստուած բարձրանայ, տարակոյս չկայ թէ ուրիշ մէկ բանի մ՚ալ չկրնար մարդս իր խելքը այնպէս աղէկ գործածել՝ ինչպէս ասոր որ մտածէ թէ ինչուան ինչ գերազանց բարձրութեան կրնայ հասնիլ, և գրգէ ինքզինքը անոր հասնելու ։

Աս այսպէս գիտնալէն ետքը, քաջութեամբ մէկդի նետենք սկեպտիկեանց, չնականաց և անոնց նման աղանդներու փիլիսոփայութիւններն որ նախատինք են մարդուս. պարզը գնենք մեզի ճշմարիտ, գեղեցիկ և բարի բաներուն հաւանալը ։ Հաւատալու համար՝ պէտք է ուզել հաւատալ, պէտք է սաստիկ սիրով ճշմարտութիւնը սիրել ։

Միայն աս սէրն է որ մարդուս

հոգւոյն ոյժ կու տայ․ ով որ տարակոյսներու մէջ տատանիլ կը սիրէ՝ հոգւոյն ոյժը կը կորէ ։

Ամէն տեսակ ուղիղ սկզբանց հաւատալէդ ետքը, առաջադրէ որ դուն առաջինն ըլլաս միշտ՝ թէ խօսքով և թէ գործքով ճշմարտութեան կենդանի պատկերն ըլլալու ։

Մարդուս խղճմտանքը ճշմարտութեամբ միայն կը հանգչի ։ Ստախօսը թէպէտ և ուրիշներէն չճանչցուի՝ ինքն իրեն պատիժ է, վասն զի կ'իմանայ որ պարտքերուն մէկը ոտքի տակ կ'առնէ ու իր պատիւը կը կորսընցընէ ։

Սուտ խօսելու ցած սովորութեան չվարժելու համար՝ մէկ հատիկ հնարքն է առաջադրել որ ամենևին սուտ չխօսիս ։ Թէ որ աս առաջադրութիւնդ մէկ անգամ մը աւրել ուզես, պատճառ չկայ որ երկու անգամ, յիսուն անգամ, անթիւ անգամ ալ չաւրես ։ Ասով է որ այնչափ մարդիկ կամաց կամաց սոսկալի կերպով դիւրամէտ կ'ըլլան կեղծելու, բաները մեծցընելու և ին-

չունան նաև զըպարտութիւն ընելու։

Այն ժամանակներն աւելի տպականած ժամանակները պիտի սեպուին՝ որ ատեն որ ստախօսութիւնը աւելի շատցած է։ Ան ատեն անվստահութիւնը ամէն տեղ կը տիրէ, ինչու ան հայր ու որդի իրարու վրայ չեն կրնար վստահիլ. ան ատեն կը շատնան ու կը շատնան մեծամեծ խոստմունքները, երդմունքները, խարդախութիւնները. ան ատենն քաղաքական, կրօնական ու նաև պարզ գրաւորական վէճ մը բացուելուն պէս ամէն մարդ կ'աշխատի որ դիմացինին վրայ մուր քսելու գործողութիւններ և խորհրդածութիւններ հնարէ. ան ատենը ամէն մարդ միտքը կը դնէ թէ իրեն հակառակորդները ինչ և իցէ կերպով ընկճելը օրինաւոր բան է. ան ատեն ամէն մարդ ամենայն ջանք կ'ընէ որ ուրիշի դէմ վկայութիւններ գտնէ; ու քանի մը հատ գտածին պէս, թէպէտ և անոնց թեթեւութիւնն ու ստութիւնը յայտնի ալ ըլլայ՝ մէկէն կը նայի որ զանոնք

հաստատէ, մեծցընէ, ու այնպէս ձեւացընէ որ իբր թէ անոնց զօրաւոր բաներ ըլլալուն կը հաւատայ։ Անոնք որ սրտի պարզութիւն չունին՝ միշտ կը կարծեն որ ուրիշներուն սիրտն ալ երկու երեսանց է։ Իրենց չսիրած մարդը բան մը որ ըսէ, կը համարին թէ չար մտքով է անոր ըսածը. իրենց չսիրած մարդը թէ որ աղօթք ընէ կամ ողորմութիւն տայ, Փառք Աստուծոյ որ ես անոր պէս կեղծաւոր չեմ կ'ըսեն։

Դուն թէպէտ և այնպիսի ատեն մը աշխարհք եկեր ես որ սուտ խօսիլն ու ամէնուն բանի մը չհաւտալը շատ հասարակ բան դարձած է, նայէ որ աս երկու ախտէն ալ անարատ մնաս։ Նայէ որ մեծանձնութեամբ յօժար ըլլաս միշտ ուրիշի ըրած ճշմարիտ խօսքին հաւատալու, և թէ որ մէկը քու ըսածիդ չհաւտայ, մի բարկանար. բաւական է որ գըւարթերես ըլլաս դուն «Մեր աչքին առջևն որ ամէն բան կը տեսնէ»։

# ԳԼՈՒԽ Գ.

## Աստուածպաշտութիւն ։

Մէյմը որ հաստատ կերպով մըտքերնիս դնենք թէ մարդս անբաններէն վեր է, և աստուածային բան մը ունի վրան, շատ մեծ համարում պիտի ունենանք այն ամենայն մտածմունքներուն վրայ՝ որ մարդուս ազնուանալուն պատճառ կրնան ըլլալ. և որովհետև յայտնի է թէ մէկ մտածութիւն մը՝ մէկ զգացմունք մը չկայ որ այնչափ ազնուացընէ զմարդ՝ որչափ կատարելութեան, երջանկութեան և Աստուծոյ տեսութեանը հասնելու փափաքը՝ նաև իր այնչափ խեղճութեանցը մէջ, հարկ է ճանչնալ աստուածպաշտութեան գերազանց բան ըլլալը և անոր ետևէն լինալ ։

Մի՛ վախնար այն բազմաթիւ կեղծաւորներէն, և ոչ այն ամէն բան ծաղր ընող մարդիկներէն, որ աս-

ուածպաշտութիւնդ՝ տեսնելով
երես համարձակին քեզի կեղծա-
ւոր ըսելու ։ Առանց քաջասրտու-
թեան ոչ առաքինութիւն մը կա-
րելի կ՚ըլլայ և ոչ մեծ պարտք մը
կատարել ․ բարեպաշտ ըլլալու հա-
մար՝ պէտք է փոքրոգի ու վախկոտ
չըլլալ ։

Ամենևին ալ մի՛ քաշուիր երբոր խնդրինքդ՝ իբրև քրիստոնեայ՝ ընկերացած կը տեսնես շատ մը ռամիկներու հետ, որ հաւատոյ գերագանց վսեմութիւնները այնչափ չեն հասկընար ։ Եւ որովհետև ռամիկն ալ կրնայ և պարտական է աստուածապաշտ ըլլալ, անկէ չհետևիր թէ աստուածպաշտութիւնը ռամկութիւն է ։ Տգէտ մարդն ալ պարտական է լաւ մարդ ըլլալու ․ միթէ անոր համար գիտունը պիտի ամըչնայ լաւ ըլլալէն ։

Դուն քու ուսմամբդ և խելքովդ հասկըցերես թէ քրիստոնէութենէն աւելի մաքուր, անմոլար, որքափայլ և յայտնապէս աստուածային կրօն չկայ ։ Ուրիշ կրօն մը

## ԳԼՈՒԽ Գ.

### Աստուածպաշտութիւն :

Մէյմը որ հաստատ կերպով մըտքերնիս դնենք թէ մարդս անբաններէն վեր է, և աստուածային բան մը ունի վրան, շատ մեծ համարում պիտի ունենանք այն ամենայն մտածմունքներուն վրայ՝ որ մարդուս ազնուանալուն պատճառ կրնան ըլլալ· և որովհետև յայտնի է թէ մէկ մտածութիւն մը՝ մէկ զգացմունք մը չկայ որ այնչափ ազնուացընէ զմարդ՝ որչափ կատարելութեան, երջանկութեան և Աստուծոյ տէրութեանը հասնելու փափաքը՝ նաև իր այնչափ խեղճութեանցը մէջ, հարկ է ճանչնալ աստուածպաշտութեան գերազանց բան ըլլալը և անոր ետևէն իյնալ :

Մի՛ վախնար այն բազմաթիւ կեղծաւորներէն, և ոչ այն ամէն բան ծաղր ընող մարդիկներէն, որ սա-

տուածպաշտութիւնդ տեսնելով թերևս համարձակին քեզի կեղծաւոր ըսելու ։ Առանց քաջասրտութեան ոչ առաքինութիւն մը վաստըկիլ կ'ըլլայ և ոչ մեծ պարտք մը կատարել · բարեպաշտ ըլլալու համար՝ պէտք է փոքրոգի ու վախկոտ չըլլալ ։

Ամենևին ալ մի՛ քաշուիր երբոր ինքզինքդ՝ իբրև քրիստոնեայ՝ ընկերացած կը տեսնես շատ մը ռամիկներու հետ, որ հաւատոյ գերազանց վսեմութիւնները այնչափ չեն հասկընար ։ Եւ որովհետև ռամիկն ալ կրնայ և պարտական է աստուածապաշտ ըլլալ, ասկէ չհետևիր թէ աստուածպաշտութիւնը ռամկութիւն է ։ Տգէտ մարդն ալ պարտական է լաւ մարդ ըլլալու · միթէ անոր համար գիտունը պիտի ամըչնայ լաւ ըլլալէն ։

Դուն քու ուսմամբդ և խելքովդ հասկըցեր ես թէ քրիստոնէութենէն աւելի մաքուր, անմոլար, սրբափայլ և յայտնապէս աստուածային կրօն չկայ ։ Ուրիշ կրօն մը

չկայ որ անոր չափ ազդեցութիւն ունեցած ըլլայ քաղաքականութիւնը առաջ տանելու և տարածելու, գերութիւնը վերցընելու կամ թեթեւցընելու, և մարդկանց հասկըցընելու թէ ամէնքն ալ Աստուծոյ առջևը իրարու եղբարք են, և նոյն իսկ Աստուծոյ հետ եղբարք են ։

Աս բաներուս լաւ ուշ դիր, և մանաւանդ պատմական ապացոյցներուն հաստատութեանը աղէկ նայէ. վասն զի այնպէս զօրաւոր են որ ինչ և իցէ անաչառ քննութեան դէմ կը դիմանան ։

Եւ որպէս զի չխաբուիս այն իմաստակութիւններէն որ այնպիսի ապացոյցներուն դէմ կ՚ընեն ոմանք, քննութեան հետ մէկտեղ միտքդ բեր այնչափ մեծամեծ մարդիկն որ նոյն ապացոյցներուն ոյժը լաւ հասկըցան, մեր ատենի ողջամիտ փիլիսոփաներէն մինչև Տանթէ մինչև սուրբ Թովմաս, մինչև սուրբն Օգոստինոս, մինչև եկեղեցւոյ առաջին սուրբ հարքը ։ Ամէն ազգի մէջ ալ այնպիսի մեծահամբաւ անուն-

ներ կան՝ որ մէկ անհաւատ մ'ալ չհամարձակիր զանոնք արհամարհելու :

Հռչակաւոր Պէքոն փիլիսոփան, որ փորձառական դպրոցի աշակերտներէն այնչափ կը գովուի, ոչ միայն անհաւատ չէ իր Ջերմեռանդ գովաբաններուն պէս, այլ և միշտ քրիստոնէութիւնը դաւանած է : Քրիստոնեայ էր և Գրոտիոս, թէպէտ և քանի մը բաներու մէջ մոլորութիւններ ունէր, և ճառ մը շարադրեց յաղագս ճշմարտութեան հաւատոյ : Լէյբնիցիոս քրիստոնէութեան զօրաւոր ջատագովներէն մէկն էր : Նեւտոն ամօթ չսեպեց գիրք մը շարադրել չորս Աւետարանաց համաձայնութեանը վրայ : Լոք Բանաւոր քրիստոնէութեան վրայ գիրք գրեց : Վոլթա իտալացի գերագանց բնագէտ ու բազմահմուտ մարդ էր, և բոլոր կենացը մէջ առաքինազարդ ուղղափառ եղաւ : Այսպիսի հանճարեղներ, և ասոնց նման ուրիշ շատ մարդիկ քիչ ազդեցութիւն չունին վկայելու թէ

քրիստոնէութիւնը իմաստութեան հետ խիստ լաւ կը միաբանի, կ՚ըսեմ՝ այն իմաստութեան որ շատ բանի տեղեակ ու. շատ խնդիրներու հմուտ է, ոչ ամիտի է, ոչ միակողմանի, և ոչ արհամարհութեան ու անհաւատութեան անտառակութեամբը ապականած։

## ԳԼՈՒԽ Դ.

Աստուածպաշտութիւն։ — Քանի մը վկայութիւններ։

Աշխարհիս մէջ մեծ անուն ձգած մարդկանց մէջ մէկ քանին կայ որ անհաւատ եղած են. շատ մըն ալ կայ որ հաւատոյ բաներուն վրայ անթիւ մոլորութիւններ ու ծուռ կարծիքներ ունեցեր են։ Բայց ասկէ ի՞նչ կ՚ելլէ. այնպիսիները թէ ընդդէմ քրիստոնէութեան ընդհանրապէս և թէ ընդդէմ կաթուղիկէ հաւատոյ շատ բան ըսին ու բան մը չկրցան ապացուցանել. և մէջերնէն

գլխաւորներն ալ իրենց աս կամ ան գրուածքին մէջ չկրցան չճանչնալ իրենց չտիրած կամ չպահած հաւատքին իմաստութիւնը ։

Հետագայ վկայութիւնները թէպէտ և հիմա նորութիւն մը չունին, բայց անով իրենց յարգը չեն կորսնցըներ, և յիշելը աղէկ է ։

Ցովհաննէս-Ցակոբ Ռուսսոյ իրեն Եմիլի․․ ըսուած գրքին մէջ աս խօսքերը կ՚ըսէ ․ “ Կը խոստովանիմ
,, որ սուրբ գրոց վսեմութիւնը զիս
,, կ՚ապշեցընէ ․ աւետարանին վար-
,, դապետութիւնը սրտիս հետ կը
,, խօսի ․․․ Փիլիսոփայից գրքերուն
,, նայէ ․ իրենց ամենայն զարդա-
,, րանքներովը հանդերձ՝ ասոր առ-
,, ջևը ո՜րչափ պզտիկ են ․․․ Կարելի
,, բա՞ն է որ մէկ գիրք մը որ միան-
,, գամայն այնչափ վսեմ ու այնչափ
,, պարզ է՝ մարդկային գործ ըլլայ ։
,, Կարելի բա՞ն է որ սոսկ մարդ ըլ-
,, լայ անիկայ՝ որուն վարքը աս
,, գրքին մէջ կը պատմուի ․․․
,, Սոկրատայ վարքին վրայ մէկը չկայ
,, որ տարակուսի , և սակայն Քրիս-

,, տօսի վարուց վկաները աւելի
,, շատուոր են քան թէ անօրը ։ Ո՞ւր
,, թողունք որ տարակուսի տակ
,, ձգելով՝ դժուարութիւնը կը հե-
,, ռանայ, բայց չվերցուիր․ աւելի
,, ալ անխմանալի բան մը կ'ըլլայ՝ թէ
,, ինչպէս քանի մը հոգի միաբանած
,, պիտի ըլլան աս գիրքը չինելու,
,, որ կարելի բան չէր՝ առանց մէկ
,, հոգի ըլլալու անոր նիւթ տուո-
,, ղը ... Եւ աւետարանին ճշմար-
,, տութիւնը այնպիսի մեծամեծ,
,, այնպիսի պայծառ, այնպիսի ան-
,, նման նշաններ ու յատկութիւն-
,, ներ ունի որ եթէ մէկը անիկայ
,, քովէն հնարած ըլլար, աւելի
,, զարմանալի պիտի ըլլար՝ քան
,, թէ մէջի գլխաւոր անձը ,, ։

Նոյն ինքն Ռուսսոյ աս ալ կ'ըսէ․
“ Փախիր ան մարդկանցմէ որ
,, բնութեան գործքերուն մեկնու-
,, թիւն տանք ըսելով՝ ցաւալի սկզ-
,, բունքներ կը սերմանեն ուրիշնե-
,, րուն սրտին մէջ ... կործանելով՝
,, քանդելով, ոտքի տակ առնելով
,, այն ամենայն բաները որ մարդ-

,, կանց առջևը պատիւ ունին՝ մշտա-
,, ցեալ մարդկանց իրենց թշուա-
,, ռութեանը մէջ ունեցած վերջին
,, միսիթարութիւնն ալ կը յափշ-
,, տակեն , իշխանութեան ու հարս-
,, տութեան տէր մարդկանց կիրքե-
,, րուն եռքի սանձը կը վերցնեն ,
,, ամենուն սրտին մէջէն յանցանաց
,, վրայ զղջալը՝ և առաքինութեան
,, յոյսը կը խլեն , ու կ'եղլեն կը
,, պարծին ալ թէ մարդկային ազ-
,, գին բարերարներն իրենք են ։
,, Ճշմարտութիւնը ոչ երբէք վնաս
,, կ'ընէ մարդկանց կ'ըսեն . ես ալ
,, անանկ կը կարծեմ . և ինծի կ'ե-
,, րեւնայ թէ ասիկայ ապացոյց մըն
,, է որ իրենց սորվեցուցածը Ճշմար-
,, տութիւն չէ . . . ,, ։

Մոնթէսքիէօ , թէպէտ և հաւա-
տոյ բաներուն մէջ մեղադրութենէ
ազատ չէ , կը նեղանար անոնց դէմ՝
որ քրիստոնէութեան չունեցած
յանցանքները կը դնեն անոր վրայ .
“ Պայլ ամէն տեսակ հաւատքները
,, նախատելէն ետև՝ քրիստոնէու-
,, թիւնն ալ վար կը զարնէ , կ'ըսէ .

„ կը համարձակի պնդելու թէ ճըշ-
„ մարիտ քրիստոնեայք չեն կրնար
„ այնպիսի տէրութիւն մը կանգնել
„ որ հաստատուն մնայ ։ Ինչո՞ւ պի-
„ տի չմնայ ։ Այն տէրութեան հը-
„ պատակները այնպիսի քաղաքացի-
„ ներ կ'ըլլային որ իրենց պարտքե-
„ րուն ինչպէս որ պէտք է յատուկ
„ տեղեկութիւն կ'ունենային, և ան
„ պարտքերը սաստիկ նախանձաւո-
„ րութեամբ կատարել կը ջանային ։
„ Շատ աղէկ կը հասկընային բնա-
„ կան պաշտպանութեան իրաւուն-
„ քը ․ որչափ որ հաւատոյ պարտ-
„ քերը լաւ ճանչնային՝ այնչափ ալ
„ աւելի կը ճանչնային իրենց պարտ-
„ քը առ հայրենիս .... Զարմա-
„ նալի՛ բան ։ Քրիստոնէական հա-
„ ւատքն որ կարծես թէ միայն հան-
„ դերձեալ կենաց երջանկութեա-
„ նը պատճառ պիտի ըլլար , նաև
„ աս աշխարհիս մէջ մեր երջանկու-
„ թեանը պատճառն է „ ։ ( ՈԳԻ
ՕՐԻՆԱՑ , ԳԻՐՔ Գ . ԳԼ . Զ ) ։

Քիչ մը ետքն ալ կ'ըսէ .

“ Շատ ծուռ տրամաբանութիւն

,, Կ՚ըսէ մէկը հաստատոյ դէմ՝ երբոր
,, մեծ գրքի մը մէջ երկայն բարակ
,, կը շարէ ան չարիքներն որ քրիս-
,, տոնէութեան հետ մտան, ու ա-
,, նոր բերած բարիքները չյիշեր....
,, Թէ որ մէկը ուզեր մէջ բերել այն
,, ամենայն վնասներն որ քաղաքա-
,, կան օրէնքները, միապետութիւ-
,, նը, հասարակապետական կառա-
,, վարութիւնը ըրած են աշխարհիս,
,, սարսափելի բաներ պիտի պատ-
,, մէր... Թէ որ մաքերնիս բերենք
,, այն անդադար կոտորածներն որ
,, թագաւորները և յոյն ու հռով-
,, մայեցի զօրավարներն ըրին, այն
,, ժողովուրդներն որ անոնք ջնջե-
,, ցին, այն քաղաքներն որ անոնք
,, կործանեցին, այն բռնութիւն-
,, ները՝ որոնցմով Լէնկթիմուրն ու
,, Ճէնկիզխանը Ասիան անապատ
,, դարձուցին, կը տեսնենք որ կա-
,, ռավարութեան մէջ քաղաքական
,, իրաւունք մը, պատերազմի մէջ
,, ալ ազգաց իրաւունք մը կայ նէ՝
,, պատճառը քրիստոնէութիւնն է,
,, և մարդկային ազգը աս բաներուս

„ համար որչափ ալ շնորհակալ
„ ըլլայ անոր՝ բաւական չէ „ ։
(ԱՆԴ. Գիրք ԻԴ. Գլ. Բ Ն Գ) ։

Մեծանուն բանաստեղծը Պայ-
րըն, այն զարմանալի հանճարոյ տէր
մարդը՝ որ անտանելի դժբաղդու-
թեամբ վարժեր էր մէյմը առաքի-
նութիւնը պաշտել՝ մէյմը մոլութիւ-
նը, մէյմը ճշմարտութիւն՝ մէյմը
ստութիւնը, և սակայն անդադար
ճշմարտութեան և առաքինութեան
ծարաւով կը տանջուէր, վկայեց
թէ ինքը կաթուղիկէ դաւանութիւ-
նը յարգելու ստիպուած է։ Ու-
ղեց որ իր մէկ հատիկ աղջիկը կա-
թուղիկէ հաւատոյ վարդապետու-
թեանը մէջ կրթուի. և իրեն մէկ
թուղթը կեցած է՝ որ անոր մէջ իր
աս որոշմանը վրայ խօսելով կ'ըսէ,
թէ ասանկ ուզելու պատճառն ան
է որ մէ՛կ եկեղեցւոյ մը մէջ ալ այն-
չափ ճշմարտութեան լոյս չեմ տես-
ներ՝ ինչպէս կաթուղիկէ եկեղեցւոյ
մէջ։

Պայրընին բարեկամը Թովմաս
Մուր որ անկէ ետք մինակ ինքը

մնաց Անգղիոյ մէջ գերազանց բա-
նաստեղծ, շատ տարի տարակուսե-
լէն ետքը թէ արդեօք ո՛ր հաւատքը
ընտրէ՝ քրիստոնէութեան վրայ խո-
րունկ քննութիւններ ըրաւ, հաս-
կցաւ որ կարելի բան չէ քրիստո-
նեայ ու լաւ տրամաբան ըլլալ ա-
ռանց կաթուղիկէ հաւատքը ըն-
տրելու. գիր անցուցեր ըրած քըն-
նութիւնները, և թէ ինչպէս բըռ-
նադատուեցաւ վերջապէս աս որոշ-
մունքը ընելու.

“ Կեցցես, կ՚աղաղակէ, կեցցես,
,, ով մի միայն և Ճշմարիտ Եկեղե-
,, ցի, դու որ կենդանութեան մէկ
,, հատիկ Ճամբան ես, և միայն քու
,, տաղաւարներդ են որ լեցուած
,, խառնակութեանը հետ բան չու-
,, նին: Քու սրբազան խորհրդոցդ
,, շքին տակը հանգչի իմ հոգիս. հե-
,, ռու ըլլան ինծմէ հաւասարապէս
,, թէ այն ամբարտաւանութիւնը
,, որ անոնց խրթնութիւնը կ՚ար-
,, համարհէ, և թէ այն անխոհեմ
,, հաւատքը՝ որ անոնց գաղտնեացը
,, խելք հասցընել կ՚ուզէ: Թէ մէ-

„կուն և թէ մեկալին դէմ սրբոյն
„Օգոստինոսի լեզուն կը թանեցը-
„նեմ. Դուն խօսէ, ես զմայլիմ.
„դու վիճաբանէ, ես հաւատամ.
„կը տեսնեմ խորութիւնը՝ թէպէտ
„և յատակը չկարենամ հաս-
„նիլ„:

## ԳԼՈՒԽ Ե.

Հաւատոյ վրայ առաջադրութիւն:

Վերոյիշեալ խորհրդածութիւններն, ու քրիստոնէութեան և մեր միայն կաթուղիկէ եկեղեցւոյն նըպաստաւոր եղած անհամար ապացոյցները տեսնելով՝ դուն ալ նոյն խօսքերը կրկնէ, և ըսէ հաստատուն մտքով. Ամենևին չեմ ուզեր որ վրաս ազդեցութիւն մը ունենան այն ամենայն ձեռնարկութիւններն որ դրսուանց բան մը կ'երևնան ու մեկ ուղիղ հետևանք մը չունին, և իմ հաւատքիս դէմ կ'ելլեն: Կը տեսնեմ որ սուտ է ան խօսքն որ կ'ըսեն

թէ հաւատքը գիտութեանց հակառակ է ։ Կը տեսնեմ որ սուտ է ան խօսքը թէ աս հաւատքը մարդկանց բարբարոսութեան ատենին յարմար է , ու հիմակուան ժամանակիս համար չէ ․ որովհետեւ ասիական քաղաքականութեան , յունական ու հռովմէական քաղաքականութեանց , և միջին դարու տեսակ տեսակ կառավարութեանցը յարմարելէն ետքը , այն ամենայն ժողովուրդներուն ալ յարմարեցաւ՝ որ միջին դարէն ետեւ սկսան նորէն քաղաքական կրթութեան մէջ մտնել , և այսօրուան օրս ալ յարմարեր է այնպիսի հանճարեղ մարդկանց որ իմաստութեան կողմանէ մէկէ մը վար չեն մնար ։ Կը տեսնեմ որ առաջին հերետիկոսապետներէն մինչեւ ՚ի Վոլթէռ և իրեն հետեւողները , անկէց ետքն ալ մինչեւ մեր օրերու Սէն-Սիմոնեանները , ամէնքը պարծեցան թէ աւելի լաւ բաներ պիտի սորվեցընեն , ու մէկն ալ չկրցաւ ։ Ուրեմն ես որ մէկ կողմանէ ինծի պարծանք կը համարիմ որ թշնամի եմ բարբարոսու֊

թեան ու գիտութեանց բարեկամ, մէկալ կողմանէ պարծանք կը համարիմ ինծի որ կաթուղիկէ եկեղեցւոյ որդի եմ, ու կը խղճամ ան մարդուն վրայ որ զիս ծաղր կ՚ընէ և աւելորդապաշտ մարդկանց ու փարիսեցւոց կարգը կը դնէ։

Աս բաներս գիտնալէն ու առաջադրելէն ետքը, նայէ որ խօսքիդ վրայ հաստատ և անշարժ կենաս։ Պատուէ հաւատքդ որչափ որ կրնաս՝ թէ սիրով և թէ խելքով, և դաւանէ զայն թէ հաւատացելոց և թէ անհաւատից մէջ։ Բայց սա դաւանութիւնդ ան միայն պիտի չըլլայ՝ որ պաղ սրտով ու նիւթական կերպով կատարես բարեպաշտութեան գործքերը. հապա նոյն գործոց կատարումը պիտի հոգևորես վսեմ մտածութիւններով, միտքդ պիտի բարձրացընես, ու խորհրդոց գերազանցութեանը վրայ պիտի քըմայլիս՝ առանց յանդուգն կերպով ուզելու խելք հասցընել անոնց. լաւ պիտի հասկընաս անոնցմէ առաջ եկած զօրութիւնները, ու ոչ

երբեք պիտի մոռնաս թէ միայն աղօթքի ատեն երկրպագութիւն ընելը բանի չի գար՝ թէ որ մտքերնիս չդնենք թէ մեր ամէն գործողութեանցը մէջ պիտի պաշտենք զԱստուած ։

Ոմանց մտքին մէջ կաթուղիկէ հաւատոյ գեղեցկութիւնն ու ճշմարտութիւնը պայծառ կը փայլի. հասկըցած են թէ մէկ փիլիսոփայութիւն մը չկայ որ անոր փիլիսոփայութեանը հասնի, անկէց աւելի թշնամի ըլլայ ամենայն անիրաւութեան, անկէց աւելի բարեկամ ըլլայ մարդուս ամէն օգտակար բաներուն. եւ սակայն խեղճ բազմութեան ընթացքին կը հեռանին. այնպէս կ'ապրին որ իբր թէ քրիստոնէութիւնը ռամիկներուն պահուած է, եւ բարեկիրթ մարդը անոր հետ բան չունի ։ Այնպիսի մարդիկ բուն անհաւատներէն աւելի յանցաւոր են, եւ շատուոր ալ են ։

Ես որ ատենով անոնցմէ մէկն էի՝ գիտեմ որ առանց դժուարութեան կարելի բան չէ այն վիճակէն ելլելը.

թէ որ դուն ալ յանկարծ նոյն վը-
ճակին մէջ իյնաս, նայէ որ դժուա-
րութեան յաղթելը աչքդ առնես ։
Ուրիշներուն արհամարհութիւնը
ամենեին հոգդ չըլլայ՝ երբոր հարկ
է որ խոստովանիս թէ գովելի ըղ-
ձացմունք մը ունիս. և ահա ամե-
նէն գովելի ըղձացմունքը զԱստուած
սիրելն է ։

Բայց թէ որ հարկ ըլլայ որ ծուռ
սկզբունքները և կամ անտարբերու-
թիւնը թողուս, ու բոլոր սրտանց
սուրբ հաւատքը դաւանիս, նայէ
որ այնպիսի սուտ ջերմեռանդու-
թեանց ու փոքրոգի խղճահարու-
թեանց ետևէ չըլլաս՝ որոնք անհա-
ւատ մարդկանց գայթակղութեան
ու ծաղրածութեան պատճառ կըր-
նաս ըլլալ. խոնարհ եղիր թէ Աս-
տուծոյ և թէ մարդկանց առջևը,
բայց ոչ երբեք մոռցիր մարդկային
պատիւը, և ոչ երբեք ուրացիր ող-
ջամիտ բանականութիւնը ։ Միայն
անմարդունբանականութիւնը կամ
խելքը հակառակ է Աւետարանին՝
որ մարդն որ ամբարտաւանութեն
ու ատելութեամբ լցուած է ։



# ԳԼՈՒԽ Զ.

## Եղբայրութիւն կամ Մարդասիրութիւն։

Միայն սուրբ հաւատքին զօրութեամբն է որ մարդս կը հասկնայ թէ ինչ է զուտ մարդասիրութիւնը, ինչ է զուտ եղբայրսիրութիւնը։

Եղբայրութիւն բառը սքանչելի խօսք մըն է. բայց Մարդասիրութիւն բառն ալ սրբազան բառ է, թէպէտ և շատ իմաստակներ ծուռ մտքով գործածեր են զանիկայ։ Պօղոս առաքեալ աս բառով կը հասկնայ մարդկային ազգի սէրը, մանաւանդ թէ ան սէրն որ ինքն իսկ Աստուած ունի մարդկային ազգիս վրայ, ինչպէս որ Տիտոսի թղթոյն մէջ կ՚ըսէ. « Յորժամ քաղցրութիւն և մարդասիրութիւն փրկչին մերոյ Աստուծոյ յայտնեցաւ »*։

* Առ Տիտ. գլ. Գ։

Ամենակալն Աստուած կը սիրէ զմարդիկ, և կ'ուզէ որ մենք ալ սիրենք զանոնք։ Չենք կրնար, ինչպէս որ ըսինք, լաւ մարդիկ ըլլալ, մեր վրայ գոհ ըլլալ, մեր վրայ համարում ունենալ, բայց եթէ աս պայմանով որ իրեն պէս աս վեհանձնական սէրն ալ ունենանք, մեր ընկերոջ առաքինութեանն ու երջանկութեանը փափաքինք. և ձեռքերնէս եկած բարիքն ընենք իրեն։

Աս սիրոյն մէջ կ'երթայ գրեթէ մարդկային ազգի ամենայն տեսակ յարգը, ու նաև աստուածսիրութեան ալ էական մասն աս է, ինչպէս որ սուրբ Գրոց շատ վսեմ իմաստներէն, և մանաւանդ հետագայէն ալ կ'իմացուի։

“ Թագաւորը պիտի ըսէ աջ կողմը կեցողներուն. Եկէք, ով իմ Հօրս օրհնութիւնն առնողները. ժառանգեցէք թագաւորութիւնը որ աշխարհիս սկիզբէն 'ի վեր պատրաստուած է ձեզի. վասն զի անօթեցայ, ինծի կերակուր տուիք. ծարաւեցայ՝ ջուր խմցուցիք. օտարական

էի, տներնիդ առիք . մերկ էի, հա-գուստ տուիք . հիւանդ էի, զիս տեսնելու եկաք . բանտն էի, քովս եկաք ։ Ան ատեն պատասխան պի-տի տան իրեն արդարներն ու ըսեն . Տէր, երբ անօթի տեսանք զքեզ ու կերակրեցինք, ծարաւած տե-սանք ու ջուր տուինք . Երբ օտարա-կան տեսանք զքեզ ու ներս առինք կամ մերկ տեսանք ու հագուեցու-ցինք . Երբ հիւանդ կամ բանտի մէջ տեսանք զքեզ ու քովդ եկանք ։ — Թագաւորը պատասխան կու տայ անոնց . Այո, ըսածս ճշմարիտ է . ամէն անգամ որ աս բաները աս իմ եղբայրներուս պզտիկներէն ալ մէ-կուն ըրիք՝ ինծի ըրած էք* ,, ։

Մտքերնուս մէջ ձևացընենք կա-տարեալ մարդու մը գաղափար, ու նայինք որ անոր նմանինք ։ Ի՞նչ կ՚ը-սեմ ։ Աս գաղափարը մեզի տուեր է Հաւատքնիս, և ի՞նչ գերազանց գաղափար ։ Հաւատքին մեզի հե-տևելու օրինակ տուած գաղափարը

* Մատթ . գլ . ԻԵ ։

այն Անձն է որ գերագոյն աստիճանի հզօր է և հեզ, — բանաւորութեան և կեղծաւորութեան անհաշտ թշնամի, — այնչափ մարդասէր՝ որ ամէն բան կը ներէ բաց 'ի անզեղջ չարասրտութենէ, — անիկայ՝ որ կրնայ վրէժխնդիր ըլլալ ու չուզեր, — անիկայ՝ որ աղքատաց եղբայր կը համարի ինքզինքը, ու աշխարհիս բարեբաղդ սեպուած մարդիկներուն անէծք չի տար՝ բաւական է որ յիշէն անոնք թէ աղքատաց հետ եղբայր են, — անիկայ՝ որ զմարդիկ իրենց գիտութեանը կամ յաջողութեանը աստիճանէն չի չափեր, հապա անոնց սրտին զգացմունքներէն և ըրած գործողութիւններէն: Ինքն է այն մէկհատիկ փիլիսոփան՝ որուն վրայ ամենևին մէկ արատ մ'ալ չտեսնուիր. Ինքն Աստուած յայտնեալ մեր մարդկային բնութեամբը, ինքն իսկ է Աստուածն մարդացեալ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ:

Մէկն որ այսպիսի սքանչելի գաղափար ունի մտքին մէջ. որչափ մե-

ծառանքով կը նայի մարդկութեան վրայ . սէրը միշտ մարդուս ունեցած համարմանը համեմատ է ։ Մարդկութեան վրայ մեծ սէր ունենալու համար՝ պէտք է վրան մեծ համարում ունենալ ։

Ով որ ընդ հակառակն իրեն մարդկութեանը վրայ խեղճ , անարգ , անստոյգ գաղափար մը կ'առնէ , ով որ կը սիրէ մարդկային ազգը սեպել խումբ մը խորամանկ ու ապուշ կենդանիներ՝ որ ծնած են միայն ուտելու խմելու , իրար անցնելու և հող դառնալու համար , ով որ մեծ բանի տեղ չուզեր դնել ամենևին ոչ քաղաքականութիւնը , ոչ արուեստները , ոչ արդարութեան սէրը , ոչ անյագ փափաքն որ ունինք միշտ՝ գեղեցիկ , բարի և աստուածային բաներուն , ա՜հ , ի՞նչ իրաւունք ունի այնպիսին սրտանց մեծարելու իրեն նման մարդիկը , զանոնք սիրելու , իր հետը մեկտեղ առաքինութեան յորդորելու , անոնց օգտին համար ինքզինքը զոհ ընելու ։

դէշութիւնները՝ փորձութիւն գայ մեզի որ մարդկութիւնը արհամարհենք, դարձընենք մոքերնիս այն պատկառելի մարդկանց վրայ որ նոյն պատմութեանց մէջ կը փայլին։ Պայրըն որ բնութեամբ նեղսիրտ էր, բայց միանգամայն վեհանձն, կ'ըսէր ինծի՝ թէ ես աս հնարքով միայն կրցեր եմ մարդատեցութենէն ազատիլ. — “ Առաջին մեծ
,, մարդն որ մոքիս առջեւը կ'ելլէ՝
,, միշտ Մովսէս մարգարէն է, կ'ը_
,, սէր ինծի. Մովսէս՝ որ այնպիսի
,, խեղճութեան մէջ թաղուած ազգ
,, մը կը կանգնէ; կռապաշտութեան
,, ու գերութեան անարգութենէն
,, կ'ազատէ, օրէնք մը կու տայ անոր՝
,, որ իմաստութեամբ լեցուն է, և
,, զարմանալի կապ մըն է նահապե_
,, տաց հաւատքին ու քաղաքակա_
,, նութեան տեսնի հաւատքին,
,, այսինքն Աւետարանին մէջ։ Մով_
,, սէսի առաքինութիւններուն ու
,, գրած կարգերուն է որ Աստու_
,, ծոյ նախախնամութիւնը այն ազ_
,, գին մէջ հանեց մեծամեծ քաղա_

„ քաղէս մարդիկ , քաջ զօրավար-
„ ներ , ընտիր քաղաքացիներ , այն-
„ պիսի սրբակաց անձինքներ՝ որ ար-
„ դարութեան սիրովը վառուած՝
„ հրաժարուեցան մարգարէանալու
„ ամբարտաւանից ու կեղծաւորաց
„ կործանումը , և ամենայն ազգաց
„ ապագայ քաղաքականութիւնը ։
„ Մէկ քանի մեծամեծ մարդկանց
„ վրայ , մանաւանդ իմ Մովսեսիս
„ վրայ մտածելով , կ'ըսէր Պայրըն ,
„ տաք սրտով կը կրկնեմ միշտ Տան-
„ թէին այն վսեմ տողը .

*Զնոստ տեսեայ՝ յիմոամս անձին փրկանամ .*

„ ու նորէն համարում կ'առնեմ աս
„ աղամայլին մարմինոյս և սասր մէջի
„ ոգւոյն վրայ „ ։

Այն անգղիացի գերազանց բա-
նաստեղծին աս խօսքերը այնպէս
ապաւորուեցան մնացին միտքիս մէջ
որ ջնջուելիք չունին , և կը խոստո-
վանիմ որ շատ անգամ երբոր մար-
դատեցութեան գարշելի փորձու-

Թխանը վրայ յարձրկեր է՝ իրեն աղէտ մտածելով մեծ օգուտ տեսեր եմ։

Այն մեծանձն մարդիկն որ ատե_նով եղեր են և հիմայ ալ կը գըտ_նուին՝ բաւական են յանդիմանել զանոնք որ ցած կարծիքներ ունին մարդուս բնութեանը վրայ։ Քանի_նե՜ր եղած են խիստ հին ատեննե_րը, քանինե՜ր եղած են Հռովմայե_ցւոց ժամանակները, քանինե՜ր եղած են միջին դարու բարբարոսութեան և հիմակուան քաղաքականութեան ատենները։ Անդին Ճշմարտութեան համար նահատակուող 'մարտիրոս_ներ, ասդին նեղելոց բարերարներ, մէկալ դին ամենամեծ փիլիսոփայու_թեամբ զարդարուած ու բոցավառ սրտով զարմանալի եղած՝ եկեղեցւոյ վարդապետներ, ամէն դին քաջա_սիրտ զօրավարներ, արդարութեան պաշտպաններ, գիտութեանց նորո_գիչներ, իմաստուն բանաստեղծ_ներ, իմաստուն ուսումնականներ, իմաստուն արուեստագէտներ։

Եւ չկարծենք թէ ժամանակով մեզմէ շատ հեռու ըլլալնուն և կամ

տառապանքով մեզմէ շատ բարձր ըլլալնուն համար՝ այն մարդիկը մեզմէ տարբեր եղած են տեսակաւ ։ Չէ․ բնութեան կողմանէ՝ մեզմէ վեր մէյ մէկ կիսաստուածներ չէին ։ Իրենք ալ կանանցածին մարդիկ էին մեզի պէս ․ իրենք ալ ցաւ քաշեցին՝ արցունք Թափեցին՝ մեզի պէս, իրենք ալ մեզի պէս հարկադրեցան չար յօժարութեանց դէմ կռուելու, երբեմն իրենք իրենցմէ ամըչնալու, և իրենք իրենց յաղթելու համար աշխատելու ։

Այլ և այլ ազգերու պատմութեանցը և ուրիշ յիշատակարանաց մէջ՝ աշխարհիս վրայ երևցած գերազանց անձինքներուն մէկքանին միայն յիշուած են ։ Հազարաւոր բիւրաւոր մարդիկ կան ամէն ատեն որ առանց անուանի ըլլալու՝ իրենց խելքին պտուղներովը ու լաւ գործքերովը պատիւ կ'ընեն մարդկութեան, այն եղբայրութեանն որ ունին ամէն աղէկ մարդկանց հետ, այն եղբայրութեանն որ ունին՝ նորէն ըսեմ՝ Աստուծոյ հետ ։

Բարի մարդկանց ազնուութիւնն ու շատուորութիւնը յիշելը ոչ է խաբուիլ. և ոչ ալ անխելք ու չարասիրտ մարդիկ ամենևին չկան ըսելով՝ մարդկային բնութեան միայն աղէկ կողմը նայիլ է ։ Չարասիրտ ու անխելք մարդիկ շատ կան, իրաւ է. բայց իմ խօսքս անոր վրայ է թէ մարդս կրնայ խելքով զարմանալի ըլլալ, կրնայ չաւրուիլ, մանաւանդ թէ կրնայ ամէն ժամանակ, ամէն աստիճանի կրթութեան մէջ, ամէն տեսակ վիճակի մէջ ազնուանալ մեծամեծ առաքինութիւններով.— և աս բաներուս համար իրաւամբ կրնայ պահանջել որ ինչ և իցէ մաւոր արարած աղէկ համարումն ունենայ իր բնութեանը վրայ ։

Երբոր իրեն պէտք եղած համարումն ունենանք մարդուս վրան, երբոր տեսնենք թէ անդադար դէպ 'ի անսահման կատարելութեան կը դիմէ, երբոր կը տեսնենք որ մարդըս աւելի իմանալի և անմահական կենաց համար եղած է քան թէ աս քանի մը օրուան կենաց համար՝

ձեր թռչնոց և կենդանեաց պէս նիւ-
թական աշխարհիս օրէնացը տակը
կապուած կ'երևնայ ,— երբոր կը
տեսնենք որ դէթ կրնայ անասնոց
խումբէն դուրս ելլել ու ըսել․ " Ես
ձեզմէ ալ ու չորս գլխս եղած ամէն
երկրաւոր բաներէն ալ վեր եմ,,—
կ'իմանանք որ սրտերնիս կը սկսի
նեղել, ու մարդկային բնութեան
վրայ սէր կը կապենք ։ Ինչուան իր
խեղճութիւններն ինչուան իր մո-
լութիւններն ալ աւելի գութեր-
նիս կը շարժեն վրան՝ մտածելով
որ ի՛նչ սքանչելի արարած է․ Կը
ցաւինք որ արարածոց թագաւո-
րը ինքզինքը անարգեր է․ կը ջա-
նանք կ'աշխատինք երբեմն որ զգու-
շութեամբ պարտըկենք իր պակա-
սութիւնները, երբեմն ձեռքերնիս
կ'երկընցընենք ու ցեխէն դուրս կը
հանենք զինքը որ նորէն հասնի ան
բարձրութեանը՝ ուսկից որ ընկեր է․
կը ցնծանք ուրախութեամբ ամէն
անգամ որ կը տեսնենք թէ ի՛նչպէս
իր մեծութիւնը միտքը բերելով ան-
յաղթելի քաջութեամբ կը պատե-

բազմի ցաւոց և Նախատանաց դէմ, կը յաղթէ նաև ամենամեծ դժուարութիւններուն, և կամքին բոլոր ամենազօր ուժովը կը մօտենայ իր աստուածային գաղափարին :

# ԳԼՈՒԽ Ը․

## Սէր Հայրենեաց

Այն ամենայն զգացմունքներն որ զմարդիկ իրարու հետ կը կապեն ու զիրենք առաքինութեան կը յորդորեն՝ ազնուական զգացմունքներ են : Շնական փիլիսոփան որ այնչափ իմաստակութիւններ կ՚ընէր ամէն տեսակ ազնիւ մտածութեանց դէմ, մարդասիրութիւն կը ծախէ՝ որ հայրենեաց սէրը ոտքի տակ առնէ ։

Ի՞նչ կ՚ըսէ․— « Իմ հայրենիքս բոլոր աշխարհս է․ ան պզտիկ անկիւնը՝ ուր որ ես ծներ եմ՝ ի՞նչ իրաւամբ ամէն տեղերէն վեր պիտի դնեմ, երբոր ուրիշ այնչափ տեղեր անկէց լաւ են․ և անոնց մէջ ալ կըր-

նամ նոյնպէս կամ աւելի աղէկ ապրիլ. հայրենեաց սէրը ուրիշ բան չէ՝ բայց եթէ տեսակ մը ինքնահաւանութիւն՝ շատոնց մարդկանց հասարակ եղած՝ որպէս զի անով կարենան համարձակ ատել ուրիշ մարդիկը »։

Այսպիսի ցած փիլիսոփայութենէ չխաբուիս, սիրելի ։ Ցածութեանը նշան սա է որ մարդկային բնութիւնը վար կը զարնէ, անոր առաքինութիւնները կ'ուրանայ, անոր ազնուութիւն տուող բաներն ալ խաբէութիւն, կամ անխելքութիւն և կամ չարութիւն կ'անուանէ ։ Մեծամեծ խօսքերով լաւ լաւ յօժարութիւններն ալ, ընկերութեան բարւոյն խիստ օգտակար բաներն ալ գետնէ գետին զարնելը՝ դիւրին՝ բայց անարգ արուեստ է ։

Ընականութիւնը զմարդ ցեխի մէջ կը պահէ. ան ցեխէն զինքը հանելու աշխատողը Ճշմարիտ փիլիսոփայութիւնն է, և ասիկայ աստուածապաշտ փիլիսոփայութիւն է, ու հայրենեաց սէրը կը պատուէ ։

Իրաւ է, բոլոր աշխարհս ալ մեր հայրենիքն է կրնանք ըսել։ Ամէն ազգերն ալ մի և նոյն մեծ ազգատոհմին կտորներն են՝ որ ընդարձակութեանը պատճառաւ չկրնար մէկ կառավարութեամբ կառավարուիլ, թէպէտ և իր գերագոյն տէրը Աստուած է։ Մեզի նման արարածները մեզի հետ մէկ ազգատոհմ համարիլը՝ ընդհանրապէս բոլոր մարդկային ազգին վրայ աղէկ աչքով նայելու պատճառ կ'ըլլայ մեզի։ Բայց ասով չեն վերցուիր ուրիշ մտածութիւններն որ նոյնպէս ճշմարիտ են։

Ասիկայ ալ գործնական ճշմարտութիւն մըն է՝ որ մարդկութիւնը զանազան ազգեր կամ ժողովուրդներ բաժնուած է։ Ազգ կամ ժողովուրդ կ'ըսուի այն մարդկանց բազմութիւնը՝ որ նոյն հաւատքը, նոյն օրէնքները, նոյն սովորութիւնները, նոյն լեզուն, նոյն ծագումը, նոյն փառքը, նոյն թշուառութիւնը, նոյն յոյսերը, և կամ աս բաներուս ամէնն ալ չէ նէ՝ մէկ քանին

ունենալով, իրարու հետ աւելի սի-
րով մը կապուած են։ Աս սէրը, աս
մի և նոյն ազգին անդամներուն ի-
րարու հետ կապուիլը ինքնահաւա-
նութիւն հասարակաց անուանելը
անոր կը նմանի՝ որ կատաղի երգի-
ծաբանին մէկը ուզէր վար զարնել
հայրական սէրն ու որդիական սէ-
րը, ըսելով թէ անիկայ դաւակցու-
թիւն մըն է որ կ՚ընէ ամէն հայր իր
որդւոցը հետ։

Միշտ մտքերնիս բերենք որ ճշ-
մարտութիւնը շատ կողմ ունի, և
թէ առաքինական զգացմանց մէջ
մէկն ալ չկայ որ հարկ չըլլայ սնու-
ցանել։ Դնենք թէ անոնց մէջը մէ-
կը կայ որ մասնաւորաց միայն պա-
հուած ըլլալով՝ կրնայ վնասակար
ըլլալ. Թող մասնաւորաց չպահուի,
և ահա վնասակար չըլլար։

Ամենայն մարդկանց վրայ ալ սէր
ունենալը շատ լաւ բան է, բայց
մարդուս իր ծնած երկիրը սիրելուն
արգելք պիտի չըլլայ. Ծննդեան եր-
կիրը սիրելը շատ լաւ բան է, բայց
ընդհանուր մարդկութեան վրայ

տէր ունենալուն արգելք պիտի չըլլայ :

Ամօ՛թ այն ցած մարդուն որ կը տեսնէ թէ մարդկանց մէջ եղբայրսիրութեան, իրար պատուելու, իրարու օգնելու, իրարու հետ անուշութեամբ վարուելու սրբազան կապը ո՛րչափ զանազան կողմեր ու պատճառներ ունի, և չգովեր :

Երկու եւրոպացի ճանապարհորդներ իրարու կը հանդիպին աշխարհիս հեռաւոր մէկ կողմը, մէկը Թուրին ծնած՝ մէկալը Լոնտրա : Երկուքն ալ եւրոպացի են . ասիկա իրենց յատկութիւնը սէր մը կը ձգէ մէջերնին, մանաւանդ ատանկ ըսեմ՝ հայրենասիրութիւն մը կը ձգէ, անով գովելի ջանք մըն ալ կ'ունենան որ ամէն բանի մէջ իրարու օգնեն :

Ուրիշ տեղ երկու իրեք հոգի կը տեսնես որ իրարու խօսքը աղէկ չեն հասկընար . սովորաբար խօսածնին նոյն լեզուն չէ . Թերևս կարծես թէ իրենց մէջ հայրենասիրութիւն չկայ, կը խաբուիս : Զուիցերացի են երեքն ալ . բայց մէկը իտալական

դաւառէ, մէկալը դաղղիականէ, մէկալն ալ գերմանականէ ։ Զիրենք պաշտպանող քաղաքական կապը նոյն ըլլալուն համար, հաստատակաց մէկ լեզուի մը պակասութեանը տեղը կը բռնէ, սէր կը ձգէ մէջերնին, ու վեհանձնութեամբ մի և նոյն հայրենեաց համար նեղութիւնները սիրով յանձն առնել կու տայ, թէպէտ և այն հայրենիքը ազգ չէ։

Իտալիոյ և կամ Գերմանիոյ մէջ ուրիշ տեսարան կը տեսնես, այնպիսի մարդիկ որ այլեայլ օրէնքներու տակ են, որով զանազան ժողովուրդներ ալ ձևացած են ու նաև երբեմն իրարու դէմ պատերազմելու կը ստիպուին. և սակայն ամէնքն ալ նոյն լեզուն կը խօսին կամ գէթ կը գրեն, նոյն նախահարց պատիւ ու մեծարանք կու տան, նոյն գրականութեան վրայ կը պարծենան. իրենց ախորժակները նըման են, իրարու բարեկամութեանը, ներողամտութեանը և քաջալերութեանցը կարօտ են։ Աս պատճառներով իրարու վրայ աւելի սէր




կ'ունենան, ու ազնիւ հաւատարմութիւն մը կը մնայ մէջերնին մեկզմէկ անցնելու:

Հայրենեաց սէրը միշտ ազնուական զգացմունք է. հայրենիքը մեծ երկիր եղեր է՝ պզտիկ երկիր եղեր է: Մէկ ազգ մը չկայ որ իրեն յատուկ պարծանքները չունենայ. իշխաններ՝ որ իր մեծութեանը պատճառ եղած են շատ կամ քիչ, երեւելի պատմական դիպուածներ, բարեկարգութեան օրէնքներ, անուանի քաղաքներ, ընդհանուր բնաւորութեանը մէջ տիրող գովելի յատկութիւններ, քաջութեամբ՝ քաղաքագիտութեամբ՝ ճարտարութեամբ ու գիտութեամբ պայծառացած մարդիկ: Անոր համար է որ ամէն մարդ ալ շատ պատճառ ունի աւելի կերպով մը սիրելու իր գաւառը, իր քաղաքը, իր գեղը:

Զգուշալի բանն աս է որ Հայրենասիրութիւնը թէ ընդարձակ տամունքով և թէ անխոհ նշանակութեամբ՝ չկարծուի թէ աս կամ ան երկրին մէջ ծնած ըլլալուն վրայ



թեթեւամտութեամբ հպարտանալն է, և անով ուրիշ ազգաց դէմ առաւելութիւն ունենալն է։ Կծծի, նախանձոտ, կատաղի հայրենասիրութիւնը առաքինութիւն չէ, մոլութիւն է։

# ԳԼՈՒԽ Թ.

## Ճշմարիտ հայրենասէր։

Իրաւցընէ ազնիւ զգացմամբ մեր հայրենիքը սիրելու համար պէտք է որ ամէն բանէ առաջ մենք զմեզ այնպիսի անձինք ընենք որ հայրենիքնիս չամչնայ՝ այլ պարծի մեր վրայ։ Բարեպաշտութիւնն ու բարի վարքը ծաղր ընել ու միանգամայն ինչպէս որ պէտք է հայրենասէր ըլլալը՝ կարելի բան չէ, ինչպէս կարելի չէ որ մէկը իր ամուսնոյն վրայ լաւ համարում ու սէր ունենայ, և միանգամայն չկարծէ թէ պարտական է նաև հաւատարիմ ըլլալ անոր։

Ով որ աստուածպաշտութիւնը, ամուսնական սրբութիւնը, վայելչութիւնը, արդարութիւնը ոտքի տակ կ'առնէ, ու հայրենիք՜ հայրենիք՜ կը կանչէ, մի՛ հաւատար անոր: Այնպիսին կեղծաւոր հայրենասէր է, այնպիսին ամենավնասակար քաղաքացի է:

Ճշմարիտ հայրենասէր՝ առաքինի մարդն է միայն, այն մարդն որ իր ամէն պարտքերն ալ կը ճանչնայ ու կը սիրէ, և անոնք լաւ կատարելու կ'աշխատի:

Այնպիսին ոչ մեծամեծաց շողոքորթներուն հետ կը միաբանի, և ոչ այն չարամիտներուն հետ որ ամէն տեսակ իշխանութեան թշնամի են. վասն զի թէ վատութիւնը և թէ անիրաւութիւնը մէյմէկ ծայրայեղ չարիքներ են:

Այնպիսին թէ որ զինուորական կամ քաղաքական պաշտօնի մը մէջ է, իր վախճանը հարստութիւն դիզել չէ, հապա իր գլխաւորին ու ժողովրդեան պատիւն ու յաջողութիւնը աւելցընել:

Թէ որ սոսկական քաղաքացի մըն
է, իր մեծին ու ազգին պատուոյն
ու յաջողութեանը նոյնպէս բոլոր
սրտանց կը փափաքի. ու բան մը
չըներ որ անոնց հակառակ ըլլայ.
հապա ամէն ձեռքէն եկածը կ՚ընէ
որ ինքն ալ գործակից ըլլայ այն ա-
ղէկութիւններուն։

Գիտէ այնպիսին որ ամէն ընկե-
րութեանց մէջ ալ զեղծմունքներ
կան, և կը փափաքի որ հետզհետէ
շտկուին. բայց կը սոսկայ այն կա-
տաղութենէն որով մէկը՝ զանոնք
շտկեմ ըսելով՝ յափշտակութեան
ու արիւնարբու վրէժխնդրութեան
ձեռք զարնէ, վասն զի՛ անոնք ու-
րիշ ամէն զեղծմունքներէն ալ ա-
ւելի սարսափելի ու վտանգաւոր են։

Այնպիսին քաղաքական կռիւնե-
րու ոչ կը փափաքի և ոչ պատճառ
կ՚ըլլայ. մանաւանդ թէ օրինակովը
ալ խօսքով ալ կը նայի որ որչափ
կրնայ չափաւորէ ուրիշներուն չա-
փազանց եռանդը, և հաշտութեան
ու խաղաղութեան յորդորէ։ Հեզ
է միշտ գառանուկի մը պէս. և միայն



երբոր իր հայրենիքը վտանգի մէջ ըլլայ և պաշտպանութեան կարօտի, ան ատեն առիւծ կը դառնայ կը պատերազմի, ու կամ կը յաղթէ կամ կը մեռնի ։

## ԳԼՈՒԽ Ժ.

### Որդիական սէր ։

Բոլոր կենացդ մէջ ընելու գործողութիւններդ ընտանեացդ մէջ կը սկսին. առաքինութեան առջի ասպարէզը մարդուս հայրենի տունն է։ Ի՞նչ ըսենք անոնց որ մտքերնին դրած են թէ իրենց հայրենիքը կը սիրեն, կը պարծենան թէ քաղասիրտ են, և տակայն ծնողաց սիրոյն պէս գերագոյն պարտքի մը մէջ կը պակասին ։

Գարշելի ապերախտութեան եղած տեղը ոչ հայրենասիրութիւն կայ և ոչ քաղաքասրտութեան նշան ։

Տղուն միտքը բացուելովը պարտաքին ինչ ըլլալը հասկընալուն պէս՝

բնութիւնը մէկէն կը սկսի կանչել անոր . " Ծնողքդ սիրէ ,, ։ Որդիական սիրոյն բնական ազդեցութիւնը այնպէս զօրաւոր է՝ որ կ'երեւնայ թէ հարկ պիտի չըլլար հոգ ընել որ մարդս բոլոր կենացը մէջ պահէ անխկայ ու սնուցանէ . և սակայն , ինչպէս որ ըսինք , ամեն տեսակ բարի ազդեցութիւններուն ալ հաստատութիւն տուողը մենք պիտի ըլլանք մեր կամքովը . ապա թէ ոչ՝ կը փճանան . պէտք է որ հաստատուն առաջադրութեամբ 'ի գործ դնենք որդիական սիրոյն պարտքերը։

Մէկն որ կը պարծի թէ զԱստուած կը սիրեմ , մարդկութիւնը կը սիրեմ , հայրենիքս կը սիրեմ , ինչպէս կրնայ պարտուպատշաճ մեծարանքը չտալ անոնց՝ որոնցմով եղեր է արարած Աստուծոյ , մարդ և քաղաքացի ։

Մեր հայրն ու մայրը բնական կերպով մեր առաջին բարեկամներն են . մահկանացուաց մէջ ուրիշ մէկու մըն ալ պարտք չունինք իրենցմէ աւելի . ուստի անանօրինելի կեր-

անով պարտական ենք իրենց ցուցը_
նելու երախտագիտութիւն, մեծա_
րանք, սէր և ներողամտութիւն, և
ու զգացմունքները ամենայն քաղ_
ցրութեամբ պէտք ցուցնենք :

Շատ գիւղերին բան է որ մեզի այն_
չափ մտաւոր անձանց հետ սատարիկ
ընտանութիւն ունենալնուս հա_
մար՝ սորված ըլլանք չափազանց ան_
հոգութեամբ վարուելու անոնց
հետ, և այնչափ ջանք չունենանք
իրենց սիրելի ըլլալու և միջակներն
լուցընելու :

Զգուշանանք այսպիսի պակա_
սութենէ : Ով որ կ՚ուզէ ազնիւ
բնաւորութեան տէր ըլլալ՝ պէտք է
որ իր ամէն զգացմունքները հաս_
տատուն կամքով մը ճշդէ ու զար_
գարէ, որով կարենան անոնք պէտք
եղած կատարելութեանը հասնիլ :

Մէկն որ ամէն դուրս ուրիշնե_
րուն հետ վարուելու ատեն ամե_
նայն զգուշաւորութիւն ու ամե_
նայն քաղաքավարական նկատմունք_
ներ ընէ, և անոր ներհակ՝ ծնողա_
ցը հետ ոչ պատուով և ոչ անուշու_

թեամբ վարուի, հարկաւ անտեղի ու մեղադրելի բան կ'ըլլայ ըրածը ։ Գեղեցիկ սովորութիւնները աշխատանքով ու կրթութեամբ կը սորվուին, և ասոր սկիզբը ընտանեաց մէջէն պիտի ըլլայ ։

« Ծնողաց հետ ամենայն համարձակութեամբ վարուելէն ի՞նչ վնաս կրնայ ելլել, կ'ըսեն ոմանք ։ Ծնողք որդւէն գիտեն թէ իրենց զաւակացը սիրելի են, թէպէտ և դրսէն քաղաքավարական կատարուածքներ ալ չտեսնեն, թէպէտ և զաւակները չհարկադրեն իրենց ձանձրութիւնները և կամ մանր մունր բարկութիւնները պարտըկելու »։ — Դուն որ ասանկ մարդ ըլլալ չես ուզեր՝ այնպէս մի խօսիր ։ Վասն զի թէ որ համարձակ վարուիլ ըսելով կոպիտ կերպով վարուիլ կը հասկընան, մենք անոր կոպտութիւն կ'ըսենք · և ասիկայ այնպիսի բան է որ ամենևին ազգականութեան ընտանութեամբը չկրնար արդարանալ ։

Այն խելքն որ սիրտ չըներ՝ դուրսը ինչպէս որ կ'աշխատի՝ ներսն ալ

աշխատելու որ ուրիշներուն հաճոյանայ, ամէն տեսակ առաքինութիւն ձեռք ձգէ, իր անձին վրայ մարդկութեան պատիւը պահէ, մարդկային բնութեան վրայ զԱստուած պատուէ՝ տկար ու ողորմելի խելք է: Բարեբարոյ, քաղաքավար, զգուշաւոր ըլլալու աշխատանքէն հանգչելու համար ուրիշ տեղն չկայ՝ բայց եթէ քունը:

Որդիական սէրը ոչ միայն երախտագիտութեան պարտք է, այլ և այնպիսի վայելչութիւն մըն է որ զանց ընել չըլլար: Թէ որ յանկարծ մէկը այնպիսի ծնողաց որդի ալ ըլլայ որ իր վրայ սէր չունին (որ այսպիսի դիպուած խիստ քիչ կը պատահի), և իրմէ պատկառանք պահանջելու այնչափ իրաւունք չունին, միայն աս բանն՝ որ իրեն կեանք տուողը անոնք են՝ այնպիսի պատկառելի մեծութիւն մը կու տայ անոնց որ ինքը չկրնար առանց վատահամբաւ ըլլալու՝ զանոնք վար զարնել չըսեմ, հապա և ոչ անհնազանդութեամբ վարուիլ հետերնին: Ասանկ

տանէն անոնց ցցուցած մեծարան-
քը առնելն ալ արդիւնաւոր կ'ըլլայ , բայց ընական պարտք ըլլալէն զուրս չելլեր , որով ուրիշներուն ալ շինութիւն կ'ըլլայ , իր պատիւն ալ կը պահէ ։

Վա՜յ այն մարդուն որ իր ծնողացը մէկ պակասութեանը զանոն գատաւոր կ'ըլլայ ։ Թէ որ սէրն ու գթութիւնը մեր հօրը մօրը վրայ չսկսինք ցուցընել՝ որո՞ւն վրայ ցուցընել պիտի սկսինք ։

Ծնողքս պակասութիւն մը չունենան , հապա կատարեալ մարդիկ ըլլան որ զիրենք մեծարեմ, ըսելը՝ ամբարտաւանութիւն ու անխրատութիւն է ։ Մենք որ ամէնքնիս ալ կը փափաքինք մեծարելի ու սիրելի ըլլալու , միթէ ամէն բանի մէջ անթերի՞ ենք ։ Թէ որ հայրերնիս կամ մայրերնիս հեռու ալ ըլլան այն երեւակայեալ իմաստութիւնէն ու առաքինութիւնէն որ մենք մեր խելքովը կը պահանջենք իրենցմէ , մեր ճարտարութիւնն այն ըլլայ որ զիրենք անմեղադիր ընենք , ուրիշի



տաղեւ անոնց պակասութիւնները ծածկենք, ու որչափ աղէկութիւններ որ ունին՝ անոնց յարգը մեծցընենք։ Այսպէսով մենք մեզի աղէկութիւն ըրած կ'ըլլանք, վասն զի բարեսիրտ՝ վեհանձն և ուրիշներուն արգիւնքը ճանչնալու վարպետ բնաւորութիւն մը կը ստանանք։

Շատ անգամ աս խորհրդածութիւնը մտքէդ թող անցնի, սիրելի․ աս տխուր՝ բայց կարեկից ու երկայնամիտ խորհրդածութիւնը թէ "Այս ալեզարդ գլուխներն որ հիմա առջեւս կը տեսնեմ՝ ո՛վ գիտէ կրնայ ըլլալ որ քիչ տարիէն գերեզմանին մէջ գլուխն ու յաւիտենական քունը քնանան"։— Ա՛հ, քանի որ զիրենք տեսնելու բարեբաղդութիւնն ունիս՝ պատուէ, ու ծերութեան տարենի անհամար նեղութիւններնուն մէջ մխիթարէ զիրենք։

Արդէն անոնց հասակը մեծ տրտմութեան պատճառ է իրենց․ չըլլայ թէ դուն ալ տրտմութիւններն աւելցընես։ Քու անոնց հետ վար-



մուտքդ ու ամէն կերպ շարժուածքըդ այնպէս սիրելի ըլլայ՝ որ զքեզ որ տեսնեն՝ հոգի առնուն ու սըրտերնին բացուի : Ամէն մէկ անուշ խնտումն որ անոնց պատկառելի շըրթանցը վրայ պատճառես , ամէն մէկ ուրախութիւնն որ անոնց սըրտին մէջ արթըննալուն պատճառ ըլլաս , քան զամենայն զուարճութիւն աւելի մեծ կ'երևնայ իրենց , և օգուտը քեզի կ'ըլլայ : Այն օրհնութիւններն որ հայր մը և մայր մը իրենց երախտագէտ որդւոյն կու տան՝ միշտ Աստուծոյ օրհնութեամբը հաստատուած են :

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Ծերոց և նախորդաց մեծարանք :

Տարիքը առած անձինքը քու ծնողացդ ու պապերուդ օրինակը սեպէ ու մեծարէ : Ազնուաւոր մարդը չի կրնար ծերերուն պատիւ չընել :



Հին ատենի Սպարտացւոց մէջ օրէնք մը կար որ ծեր մը գալուն պէս երիտասարդները ոտք պիտի ելլէին. անոր խօսած ատենը լուռ պիտի կենային, դիմացնին որ ելլէր՝ մէկդի պիտի քաշուէին ։ Աս բանս որ մեր մէջ օրէնքը չապսպրեր՝ թող վայելչութիւնը ապսպրէ՝ և աւելի լաւ է ։

Աս մեծարանքը այնչափ գեղեցիկ բան է որ ինչուան անոնք ալ որ գործադրելը կը մոռնան՝ ուրիշի վրայ տեսած ատեննին ուզեն չուզեն կը գովեն ։

Աթենացի ծերուն մէկը Ողիմպիական խաղերուն մէջ՝ տեղ մը կը փնտռէր որ նստի խաղերը տեսնէ. ամփիթէատրոնին բոլոր աստիճաններն ալ լեցուն էին ։ Քանի մը աթենացի լիրբ երիտասարդներ աչք ըրին որ իրենց քովը գայ. երբոր անիկայ հրաւիրմունքը ընդունելով շատ նեղութեամբ ու դժուարութեամբ ինչուան անոնց մօտ հասաւ՝ անոնք զինքը քովերնին առնելու տեղ սկսան աններեսութեամբ ծի-



ծաղիլ վրան : Խեղճ աղւորը մէկ գիւղէն մէկալ գիւղ հրուելով գնաց ան կողմը հասաւ ուր որ Սպարտացիք կը նստէին : Ասոնք որովհետեւ իրենց հայրենեաց անխախտելի օրէնքնե-րը պահելու վարժած էին, մէ-կէն 'ի մէկ ոտք կ'ելլեն պատկառա-նօք ու զինքը մէջերնին կ'առնուն : Այն Աթենացիքն որ այնպիսի ան-ամօթ կերպով ծերը ծաղր ըրեր էին՝ մեծ համարմունք առին իրենց վեհանձն ոսոխներուն վրայ, և ա-մէն կողմերէն ծափահարութիւն-ներն սկսան : Ծերունւոյն աչուը-ներէն արցունքը աղբիւրի պէս կը վազէր ու կ'ըսէր . "Աթենացիք մարդավարութիւնը կը ճանչնան, Սպարտացիք կը կատարեն ,, :

Աղէքսանդր Մակեդոնացին, — աս քանիս մէջ Մեծ անուանն ալ կըր-նամ տալ իրեն —, ան ատեններ ալ որ չորս դիէն մեծամեծ յաղթութիւն-ները տեսնելով կրնար հպարտա-նալ՝ գիտէր թէ ինչպէս պէտք է խոնարհիլ ծերոց առջևը : Մէկ ան-գամ մը իր յաղթական արշաւանք-

ներուն մէջ չափէ դուրս շատ ձիւն եկած ըլլալուն համար չկարենալով առաջ երթալ, կրակ վառել տուաւ, ու թագաւորական աթոռովը դիմացը նստած կը տաքնար ։ Իր դինուորացը մէջ տեսաւ որ ծերունի մարդ մը կեցեր կը դողդըղայ • ցատքեց ելաւ տեղէն , ու այն անյաղթելի ձեռուըներովը՝ որ Դարեհի ինքնակալութիւնը կործաներ էին՝ բռնեց ծերունին ու բերաւ իր աթոռին վրայ նստեցուց ։

“ Այն մարդը միայն չար է որ պատկառանք չունի ծերոց՝ կանանց և թշուառ մարդկանց ,, կ՚ըսէր Փարինի իտալացին ։ Եւ ինքը Փարինին իր աշակերտացը վրայ ունեցած ազդեցութեամբն ալ զանոնք այնպէս կը բռնէր որ ծերերուն պատիւը պահեն ։ Անգամ մը տղու մը վրայ ծանր յանցանք մը լսած ըլլալով՝ բարկացեր էր անոր դէմ ։ Դիպուածով մը անոր դիմացը ելաւ ճամբան , ու տեսաւ որ տղան վեղարաւոր ըսուած կրօնաւորներէն ծեր մարդու մը տէր կենալով ինչ-

պէս որ պէտք է նէ յանդիմանութիւն կու տար քանի մը սրիկաներու որ այն ծերուն նեղութիւն տուեր էին. Փարինին մէկէն 'ի մէկ անոր խօսքերն սկսաւ հաստատել, ետքը գնաց գրկեց տղան ու ըսաւ. « Քիչ մը առաջ ես գէշ չար կը կարծէի, բայց հիմա որ աչքով տեսայ ծերերու վրայ ունեցած գութդ նորէն միտքս դրի որ ամէն տեսակ առաքինութեան տէր կրնաս ըլլալ »:

Տարիքնին առած անձինք՝ ևս առաւել պատկառելի պիտի ըլլան մեզի՝ երբոր մեր տղայութեան ու պատանեկութեան նեղութիւնները քաշեր են, երբոր կրցածնուն չափ մեր միտքն ու սիրտը կրթելու աշխատեր են: Ներողամիտ ըլլանք անոնց պակասութիւններուն, և վեհանձնութեամբ նստինք հաշիւ ընենք թէ ո՛րչափ նեղութիւն տուած ենք իրենց, թէ ո՛րչափ սէր ցուցուցեր են մեզի, և թէ մենք որ մեր սէրը վրաներնէն չպակսեցընենք նէ՝ ինչ անուշ փոխարէն ըրած կ'ըլլանք ա-



նոնց ։ Չէ · մէկն որ ազնուական մտածութեամբ ինքզինքը նուիրեր է՝ ազգաց դաստիարակութիւն տալու, այնպիսւոյն բաւական հատուցումն չէ այն հացն որ ամենայն իրաւամբ կը տրուի իրեն ։ Այն հայրական ու մայրական խնամքները վարձւոր մարդու խնամքներ չեն ։ Որուն որ սովորութիւն դարձեր են՝ անոր ազնուանալուն պատճառ կ'ըլլան ։ Ուրիշները սիրելու կը վարժեցը-նեն, և ուրիշներէն սիրուելու իրա-ւունք կու տան ։

Որդիական մեծարանք ցուցընենք մեր մեծերուն, որովհետև մեծեր-նիս են ։

Որդիական մեծարանք ցուցընենք այն ամենայն մարդկանց որ հայրե-նեաց կամ մարդկութեան լաւ ծա-ռայութիւն ըրած են ։ Անոնց գրուա-ծքները, անոնց կենդանագիրը, անոնց գերեզմանը մէյմէկ սրբազան յիշելիքներ ըլլան մեզի ։

Երբոր անցեալ դարերը և անոնց մէջ մեծ ազգաց բարբարոսութեան նշան-ները կը մտածենք, երբ հիմակուան

ժամանակին այնչափ չարիքներուն վրայ ողբալով մը կը տեսնենք որ ատոնք անցած գնացած ժամանակներուն մոլութեանցն ու մոլորութեանցը պտուղներն են, նայինք որ մեր նախնիքը արհամարհելու փորձութենէն չյաղթուինք: Խղճմըտանքով մեզի պարտք համարինք անոնց վրայ ներողամտութեամբ դատաստան ընելը: Կը ցաւինք այն պատերազմներուն վրայ որ կ'ընէին իրենք. բայց աս ալ մտածենք թէ արդեօք հարկը՝ կամ թէ անմեղ կերպով սուտ յոյսերէ խաբուիլը (որոնց վրայ այսչափ հեռաւորութեան մէջ դժուարաւ կրնանք դատաստան կըտրել) ըստ բաւականին չէ՞ն արդարացըներ զիրենք: Օտարներէ որ օգնութիւն ուզեցին ու վնասեցան. բայց միթէ նոյնպէս չարդարացըներ զիրենք հարկը կամ սուտ յոյսերէ խաբուիլը: Օրէնքներ կը դնէին որ մենք հիմա չենք հաւնիր. բայց միթէ կրնա՞նք ըսել թէ այն ժամանակներուն ալ յարմար չէին այն օրէնքները, կամ թէ այն ժամանակի

ժողովուրդներուն մարդկային իմաստութեան ուժովը անոնց աղէկ կարգեր դնել կ'ըլլա՞ր ։

Խելացի դատաստանն ու քննութիւնը լուսաւորեալ պէտք ըլլայ բայց անգութ պէտք չըլլայ առնախնիս, ոչ պէտք զրպարտէ, և ոչ արհամարհէ զանոնք՝ որ չեն կրնար գերեզմաններէն ելլել ու ըսել մեզի. — “Ո՛վ թոռներ, մեր այսպէս կամ այնպէս ընելուն պատճառն աս էր ”։

Հռչակաւոր է Կատոնի ծերոյն ըսած խօսքը. “Դժուարին բան է մեզմէ ետքը եկող մարդկանց հասկըցնելը թէ մեր բռնած ճամբան ինչըվ կ'արդարանայ ”։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Եղբայրական սէր ։

Դուն եղբայրներ ու քոյրեր ունիս ։ Ձեռքէդ եկածին չափ ջանք ըրէ որ քեզի նման մարդկանց ինչ սէր որ պարտական ես ցուցընելու՝

ամենակատարեալ կերպով մը սկսիս նախ երեւցընել ծնողացդ վրայ, ետ-քը անոնց՝ որ եղբայրութեանց մէջ ամենէն մօտաւոր եղբայրութեամբ հետդ կապուած են, այսինքն ա-նոնց որ քեզի հետ նոյն ծնողաց զաւակըներ են ։

Եղբայրսիրութեան, աստուա-ծային գիտութիւնը լաւ սորվելու, և ամենայն մարդկին ինչպէս որ պէտք է սիրելու համար՝ սկզբունքը ըն-տանեաց մէջ սորվիլ սկսելու է ։

Աս մտածութեանս մէջ թէ “Մէկ մօր զաւակըներ ենք,, որչափ քաղ-ցրութիւն կայ։ Այն ի՜նչ քաղցր բան է մտածելը թէ աշխարհք եկածնուս պէս՝ մէկտեղ նոյն անձինքը գտած ենք՝ ուրիշներէն աւելի սիրով մե-ծարելու ։ Եղբարց ու քուրերոյ նոյն արիւնն ունենալը և բնաւորու-թեան կողմանէ շատ բանի մէջ նը-մանը ըլլալը՝ բնական կերպով տաս-տիկ սէր մը կը ձգէ մէջերնին, այն-պիսի սէր որ առանց տոսկալի ինք-նահաւանութեան չկրնար աւրուիլ ։

Կ'ուզեմ լաւ եղբայր ըլլալ. — ին-



քնահաւանութենէ զգուշացիր. առաջադրէ ամէն, որ որ եղբարցդ ու քըրոջըդ հետ վարուելու ատեն վեհանձնութիւն ունենաս։ Թող անոնցմէ ամէն մէկն ալ հասկընայ որ դուն իրենց շահն ալ քու շահուդ պէս կը մտածես։ Թէ որ իրենցմէ մէկը պակասութիւն մը ընէ՝ ներողամիտ եղիր, ոչ միայն այնպէս ինչպէս որ ուրիշի մը կ'ըլլայիր, հապա աւելի կերպով մը։ Ուրախացիր անոնց առաքինութեանցը վրայ. հետևէ իրենց, քու բարի օրինակովդ առաջ տար զիրենք, անանկ ըրէ որ քեզի պէս եղբայր ունենալնուն վրայ փառք տան Աստուծոյ։

Անհամար պատճառներ կան անուշ անուշ յիշատակներու, սիրալիր կարօտանաց, գովելի երկիւղածութեան, որոնցմով եղբայրական սէրը անդադար սնունդ կ'առնու ու կ'աճի։ Բայց գէթ մտադրութիւն ընելու է անոնց վրայ. ապա թէ ոչ՝ շատ անգամ առանց իմացուելու կ'անցնին կ'երթան. պէտք է որ մարդս ինքզինքը բանադատէ այն բա-



ները զգալու ։ Բարակ զգացմունք-
ներ ունենալու համար՝ հաստա-
տուն ու եռանդուն կամք պէտք է ։
Ինչպէս որ ոչ ոք կրնայ բանաստեղ-
ծութենէ կամ նկարչութենէ լաւ
հասկըցող ըլլալ՝ առանց մասնաւոր
կերպով սորվելու, ասանկ ալ ոչ
ոք կրնայ եղբայրական սիրոյն կամ
ուրիշ որ և իցէ ազնիւ զգացման
համը առնուլ՝ առանց հաստատուն
կամօք աշխատելու որ համը առնու ։

Ընտանեկան մտերմութիւնը նայէ
որ ոչ երբէք պատճառ ըլլայ քեզի՝
եղբայրդ հետ անքաղաքավար ըլ-
լալու ։

Նայէ որ ալ աւելի մարդավար
ըլլաս քրոջդ հետ ։ Անոնց բը-
նութիւնը զօրաւոր անուշութիւն մը
ունի, որ անով սովորաբար բոլոր
տանը մէջ սքանչելի զուարթութիւն
մը կը ձգեն, անհամութիւնները
կը հեռացնեն, հայրական և կամ
մայրական խրատներուն սաստկու-
թիւնը կը մեղմացնեն ։ Կանացի
առաքինութեանց քաղցրութիւնը
անոնց վրայ տես ու մեծարէ · բնու-

թիւնք կակղըններու աղքատացութիւնին տես և ուրախացիր ։ Եւ որովհետեւ Աստուած զիրենք քան զքեզ տկար և քան զքեզ զգայուն՝ ստեղծեր է, նայէ որ աւելի մտադիր ըլլաս մխիթարելու զիրենք՝ թէ որ տրտմեր են, զուն քեզմէ զիրենք չտրամեցըններու, և միշտ մեծարանք ու սէր ցուցըններու անոնց ։

Այն անձինքն որ իրենց եղբարցն ու քրուըրտոցը հետ չարասրտութեամբ ու կոպտութեամբ վարուիլ սորված են՝ ուրիշ որ և իցէ մարդու հետ ալ կոպիտ կերպերով ու չարասրտութեամբ կը վարուին ։ Ընտանեկան վիճակը այնպէս գեղեցիկ, այնպէս սիրուն ու այնպէս սուրբ պէտք ըլլայ որ երբոր մարդս տնէն դուրս ելլէ՝ հետը պէտք տանի ուրիշ տեսակ ընկերութեանց մէջ ալ այն մեծարանաց ու սիրոյ գեղեցիկ ջանկը և այն համարումը առաքինութեան վրայ՝ որ անդադար աղնիւ զգացմանց տանէ ըլլալուն պտուղներն են ։



# ԳԼՈՒԽ ԺԳ.

## Բարեկամութիւն։

Բաց 'ի ծնողքէդ և ուրիշ ազգականներէդ, որ քեզի բնութենէն տրուած ամենէն մօտ բարեկամներդ են, և բաց 'ի վարպետներէդ՝ որ ուրիշներէն աւելի քու համարմանդ արժանի ըլլալնուն համար սիրով բարեկամ կ'անուանես քեզի, կրնայ ըլլալ որ մասնաւոր յարում մը գայ քեզի նաև ուրիշներու՝ որոնց առաքինութիւնները այնչափ չես ճանչնար, մանաւանդ քեզի հասակակից կամ քեզմէ տարիքով քիչ տարբեր պատանեաց։

Արդեօք աս յարումը ե՞րբ պիտի ընդունիս. կամ թէ ո՞ր ատեն քեզմէ պիտի հեռացընես։ Պատասխանը յայտնի է։

Ամենայն մարդկանց պարտական ենք բարին կամենալու, բայց աս բարիք կամենալը միայն անոնց հա-



մար ինչուան բարեկամութեան աստիճանը պիտի հասցընենք՝ որոնք որ մեր համարմանը ինչպէս որ պէտք է արժանաւորութիւն ունին: Բարեկամութիւնը եղբայրութիւն մըն է, և աւելի գերագոյն նշանակութեամբ՝ եղբայրութեան իմանալի գեղեցկութիւնն է: Գերազանց համարձակութիւն մըն է երկու կամ իրեք հոգւոյ (և ոչ երեք բազմաց) մէջ որ կերպով մը հարկաւոր եղած են իրարու, և իրարու վրայ վերջին աստիճանի յարմարութիւն մը գտած են մէկզմէկ հասկընալու, մէկմէկու օգնելու, իրարու միջին ազնիւ կերպով մեկնութիւն տալու, մէկզմէկ 'ի բարին յորդորելու:

“Մէկ ընկերութիւն մը չկայ, կ'ըսէ Կիկերոն, որ այնչափ ազնիւ՝ այնչափ հաստատուն ըլլայ, որչափ այն՝ որ բարեբարոյ մարդիկ բնութեամբ նման ըլլան իրարու, և ընտանութեամբ կապուած*”:

* Ցղ. Պաշ. գիրք Ա. գլ. ԺԸ:

Մի՛ անարգեր բարեկամութեան սրբազան անունը՝ առաքինութիւն մը չունեցող կամ քիչ ունեցող մարդուն տալով:

Այն մարդը որ բարեպաշտութեան թշնամի է, այն մարդն որ իր մարդկային պատիւը պահելու մեծ ջանք չունի, այն մարդն որ չհասկընար թէ պատիւ ընելու է հայրենեաց՝ խելքով ու բարի վարքով, այն մարդն որ ծնողացը յարգութիւն չունի, և եղբարցը չարիքը կ'ուզէ, թէպէտ և մարդկանց մէջ ամենէն հրաշալին ըլլայ կերպարանքին ու շարժուածքին անուշութեանը համար, ճարտասանութեանը համար, շատ բանի հմուտ ըլլալուն համար, և ինչուան նաև վեհանձնական գործքեր ընելու ունեցած վառվռուն յօժարութեանը համար, չըլլայ թէ քեզի բարեկամ ընտրես: Թէպէտև վերջի աստիճանի սէր ալ ցուցընէ քեզի՝ ընտանութիւն մ'ըներ հետը. միայն առաքինի մարդն է որ բարեկամ ըլլալու կատարելութիւններն ունի:



Քանի որ չես ճանչցած մէկուն առաքինի ըլլալը, միայն ատ մտածելը թէ կարելի է որ առաքինի չէ՝ բաւական ըլլայ քեզի իրեն հետ այնչափ սիրով միայն վարուելու՝ որչափ որ ամէն քաղաքավար մարդու կը վայելէ: Սիրտդ մէկուն նուիրելը շատ գերազանց բան է. մէկէն 'ի մէկ առնել առաջ նետելը՝ մեծ անխոհեմութիւն, յանցանք, ու անտեղի բան է: Գէշ ընկերներու հետ կապուողը ինքն ալ կը գէշնայ, կամ գէթ անոնց գէշութիւնը իր վրայ ալ ցոլացնել կու տայ՝ հանդերձ ամօթալի նախատանօք:

Բայց երանի՜ այն մարդուն որ ընտիր բարեկամ մը կը գտնէ: Քանի որ ինքնիրեն միացած էր՝ իր առաքինութիւնը շատ անգամ թոյլ ու տկար կ'ըլլար. բարեկամին տուած օրինակն ու գովեստը անոր մէկ ոյժը երկուք կ'ընեն: Թերեւս առջի բերանը վախի մէջ էր, տեսնելով որ շատ պակասութիւններու մէջ իյնալու յարմարութիւն ունի, և իր



յարգը չի ճանչնար. սիրած մարդուն համարձակմամբը ինքն ալ իր վերայ համարում կ'առնէ: Աղջին բերանը գ.ի.ս. կ'ամչնայ ինքն իրեն՝ որ դիմացինին ներողամտութիւնը ինչ կատարելութիւններ որ կու տայ իրեն՝ ինքը ամէնն ալ չունի. բայց հետզհետէ սիրտ կ'առնու որ աշխատի ինքզինքը շտկելու: Կ'ուրախանայ որ իրեն ունեցած աղէկութիւնները բարեկամին աչքէն չեն փախած, ու շնորհակալ կ'ըլլայ անոր. ետևէ կ'ըլլայ որ ուրիշ աղէկութիւններ ալ ձեռք ձգէ. և այսպէս բարեկամութեան ուժովը, այն մարդըն որ կատարելութենէ հեռու էր ու հեռու ալ պիտի մնար՝ երբեմն կ'ըլլայ որ քաջութեամբ դէպ 'ի կատարելութիւն կը դիմէ:

Ինքզինքդ մի՛ ներեր բարեկամներ ստանալու համար: Լաւ է մէկ բարեկամ մըն ալ չունենալ՝ քան թէ ետքը զղջալ որ ինչու այնպէս առանց աղէկ մը մտածելու քանի մը հատ ընտրեցիր: Բայց մէկ հատը գտնելէդ ետև, ծայրայեղ բարեկամութեամբ պատուէ զինքը:

Այս ազնիւ զգացմունքը գովելի եղած է ամէն իմաստասիրաց բերնովը, գովելի եղած է նաև սուրբ հաւատոյ վարդապետութեամբը:

Սուրբ Գրոց մէջ ալ բանիս գեղեցիկ օրինակներ կը գտնենք. — "Յովնաթանու սիրտը Դաւթի սրտին հետ կապուեցաւ, կ՚ըսէ... Յովնաթան իր անձին պէս սիրեց զԴաւիթ...": — Բայց ա՛լ մեծը կ՚ուզես նէ, նոյն իսկ Փրկիչն մեր բարեկամութիւնը սրբազան բան մը ըրաւ: Յովհաննէս աւետարանչին քնացած ատենը գլուխը իր գիրկը բռնեց. Խաչին վրայէն ալ՝ հոգին աւանդելէն առաջ՝ աս աստուածային խօսքերս ըսաւ՝ որ բոլորովին որդիական սէր ու բարեկամութիւն էին. — "Մայր իմ, ահա քու որդիդ: Աշակերտ իմ, ահա քու մայրդ":

Ինծի կ՚երեւնայ թէ բարեկամութիւնը (բայց այն գերազանց ու ճշմարիտ բարեկամութիւնը՝ որ մեծ համարման վրայ հիմնած է) գրեթէ հարկաւոր է մարդուս՝ զին-

քը ցած յօժարութիւններէ հեռա-
ցընելու համար։ Բարեկամութիւնը կարծես թէ այնպիսի բանաստեղծական ազնուութիւն մը, այնպիսի վսեմական ոյժ մը կուտայ մարդուս՝ որ առանց անոր գժուարաւ կ'ելլէ մարդս ինքնահաճութեան ցեխոտ փոսէն։

Բայց մէյմը որ բարեկամութիւնը ստացար ու խոստացար՝ անոր պարտքերն ալ անջնջելի կերպով տպաւորէ սրտիդ մէջ։ Շատ են աս պարտքերը, այնչափ են որ բոլոր կենացդ մէջ անանցմով արժանաւոր պիտի ընես զքեզ քու բարեկամիդ։

Ոմանք խորհուրդ կու տան որ մարդ մարդու հետ ամենևին բարեկամութիւն չհաստատէ, վասն զի անով մարդուս զգացմունքները շատ կը կապուին կ'ըսեն, միտքը կըցրուի, ուրիշներուն նախանձու պատճառ կ'ըլլայ. բայց ես աս բանիս մէջ հրաշալի իմաստասիրի մը կողմն եմ, այսինքն սրբոյն Ֆրանչիսկոսի Սալեզացւոյ, որ իր Փիլոթէա կամ Աս-



տուածատէր ըսուած գրքին մէջ կ՚ը-
սէ թէ ամենայ "Գէշ խորհուրդ է":
Գիտեմ կ՚ըսէ՝ որ վանքերու մէջ
մասնաւոր սրտակցութիւններն ար-
գիլելը խոհեմութիւն է. — "Բայց
,, աշխըրքի մէջ հարկաւոր է որ ա-
,, ռաքինութեան գրօշակին տակը՝
,, Խաչի գրօշակին տակը զինուորիլ
,, ուզողները իրարու հետ միա-
,, նան... Այն մարդկանց ապրե-
,, լը աշխարհի մէջ է, ուր որ այն-
,, չափ դժուարին ճամբաներ կան
,, անցնելու՝ առ Աստուած հասնե-
,, լու համար, այնպիսի ճամբորդ-
,, ներու կը նմանին անոնք որ սե-
,, պացեալ և կամ սահուն ճամբա-
,, ներու մէջ մէկզմէկ կը բռնեն որ
,, չիյնան ու աւելի ապահով կեր-
,, պով առաջ երթան ,,:

Իրաւցընէ, չարագործ մարդիկ
ձեռք ձեռքի կու տան չարիք ընե-
լու համար. բարեբարոյ մարդիկ ի-
րարու ձեռք պիտի չտա՞ն բարիք ը-
նելու համար:



# ԳԼՈՒԽ ԺԳ.

Ուսմունք ։

Որչափ որ կրնաս միտքդ պիտի լուսաւորես․ ասիկայ սրբազան պարտք մըն է քեզի ։ Անով աւելի յարմարութիւն կ'ունենաս զԱստուած փառաւորելու, և հայրենեացդ, ազգականացդ ու բարեկամացդ պատիւ ընելու ։

Ռուսոյին աս խենդ կարծիքին ծռութիւնը, թէ՝ վայրենի մարդը ամենէն երջանիկն է աս աշխարհիս մէջ, և թէ տգիտութիւնը գիտութենէն աղէկ է, փորձով ստուգուած է ։ Ամենայն ճանապարհորդք տեսած են որ վայրենի մարդը ամենաթշուառ է․ ամէնքնիս ալ կը տեսնենք որ տգէտը կրնայ լաւ մարդ ըլլալ, բայց գիտունն ալ նոյնպէս կրնայ ըլլալ, մանաւանդ թէ աւելի գերազանց կերպով լաւ պիտի ըլլայ ։

Գիտութիւնը ան ատեն միայն վընասակար է՝ երբոր հետը հպարտութիւն խառնուի։ Թող հետը խոնարհութիւնը միանայ, կը տեսնես որ ինչպէս գիտութիւնը պատճառ կ'ըլլայ զԱստուած աւելի լաւ կերպով սիրելու, զմարդիկ աւելի գերազանց կերպով սիրելու։

Ինչ բան որ կը սորվիս, նայէ որ կրցածիդ չափ խորունկ ու աղէկ 'ի տեղը սորվիս։ Հարևանցի կերպով ուսմունք սորվողներուն մեծ մասը հպարտ ու ամբարտաւան մարդիկ կ'ըլլան. սրտանց իրենց փուճ մարդիկ ըլլալը կը գիտնան, և սակայն ամենայն սիրով կը միաբանին իրենց պէս ձանձրալի մարդկանց հետ, ու կը քարոզեն թէ մենք մեծամեծ մարդիկ ենք, և թէ բուն մեծամեծները պզտիկ մարդիկ են։ Աս է ահա պատճառն որ իմաստակները անդադար կռիւ կը հանեն իմաստնոց դէմ, և թեթևամիտ շատախօսները ողջամիտ իմաստասիրաց դէմ։ Ասով է որ երբեմն ժողովուրդը կը սխալի ու պատիւ կ'ընէ ան



մարդուն որ խիստ քիչ բան գիտէ, ու միշտ բարձր ձայնով կը խօսի։

Մեր դարուս մէջ աղէկ գիտուն մարդիկ չեն պակսիր, բայց վեր 'ի վերոյ գիտութիւն ունեցողները խիստ աւելի շատուոր են, որ շատ պժգալի բան է։ Ամօթ սեպէ ասոնցմէ մէկն ըլլալը։ Ամօթ սեպէ չէ թէ հպարտութեամբ, հապա գիտնալով որ պարտք ան է, հայրենեացդ սիրոյն համար, Աստուծոյ քեզի տուած մարդկային խելքին վրայ վեհանձնական համարմունք ունենալուդ համար։

Թէ որ շատ տեսակ ուսմանց մէջ քաջ ըլլալու կարողութիւնդ չի հասնիր, մէկ քանիին վրայէն կրնաս թեթև կերպով մը անցնիլ՝ որպէս զի անոնց վրայ գտնէ այն տեղեկութիւններն ունենաս որ չգիտնալը ամօթ է. բայց այնպիսի ուսմանց մէջէն մէկն ընտրէ ու աւելի կերպով անոր վրայ դարձուր կարողութիւններդ, մանաւանդ կամքդ, որպէս զի ուրիշներէն ետ չմնաս։

Անկէց 'ի զատ գեղեցիկ է նաև



Սենեկային այս խրատը. — « Կ'ու-
,, զեմ որ կարդացած բանդ երկար
,, ատեն միտքդ մնայ. մէկ քանի ող-
,, ջամիտ ու խելացի հեղինակներ
,, միայն ընտրէ, ու անոնց իմաստ-
,, ներովը տոգորուէ: Ամէն տեղ
,, գտնուիլ ըսելը՝ ամենևին մէկ
,, մասնաւոր տեղ մըն ալ չգտնուիլ
,, է: Կեանքը ճամբորդութեան մէջ
,, անցընողը շատ ճանչուորներ կ'ու-
,, նենայ ու քիչ բարեկամ. նոյնպէս
,, են այն շտապաւ գիրք կարդա-
,, ցողները, որ առանց մէկ գրքի մը
,, վրայ սէր ձգելու՝ անթիւ գրքեր
,, կը դարձընեն ,,:

Ամենէն աւելի սիրտդ սիրած ուսմունքը որն ալ ըլլայ՝ մէկ մոլութիւն մը կայ որ անկէ շատ պիտի զգուշանաս. այս ինքն՝ չըլլայ թէ քու գիտութեանդ վրայ այնպէս զմայլած ցուցընես ինքզինքդ որ ենչուան արհամարհես ուրիշ այն ամենայն գիտութիւններն որ դուն չես կրցած անոնց ետևէն ըլլալ:

Բանաստեղծ ըսուածներէն ոմանց արձակ շարադրութեան դէմ

ըրած անխելք մեծապատուութիւննե-
րը, արձակ բան չարագրողներուն
ալ տաղաչափութեան դէմ ըրածները, ըն-
նադիտաց՝ ընադանցագէտներուն
դէմ, չափաբերաց՝ չափաբերու-
թիւն չգիտցողներուն, սանոնց ալ
անոնց դէմ խօսիլները՝ տղայութիւն-
ներ են: Ամենայն գիտութիւնք,
ամենայն արուեստք, Ճշմարտու-
թիւնն ու գեղեցկութիւնը գանե-
լու և հասկըցընելու ամէն տեսակ
կերպերն ալ՝ իրաւամբ պատկանելի
պիտի ըլլան մարդկային ընկերու-
թեան, և մանաւանդ բարեկիրթ
մարդուն:

Ճշմարիտ խօսք չէ ոմանց ըրածը
թէ Ճիշդ գիտութիւններն ու բա-
նաստեղծութիւնը իրարու ներհակ
են: Պիւֆոն քաջ բնապատում էր,
և սակայն իր ոճը բանաստեղծա-
կան հիանալի կրակով մը կը փայլի:
Մասքէռոնի իտալացին թէ վար-
պետ բանաստեղծ էր և թէ վար-
պետ չափաբեր:

Բանաստեղծութեան և ուրիշ ա-
սոր նման գեղեցիկ դպրութիւն ը-

սուած գիտութեանց եանէ որ ըլ-
լայ, այնպէս չըլլայ որ միտքդ չը-
կարենայ անկէց ետքը հանդարտու-
թեամբ հաշիւներու կամ տրամա-
բանական մտածութիւններու ուշ
դնել: Թէ որ արծիւն ըսելու ըլ-
լար, "Իմ բնութիւնս թռչիլ է,
ուստի չեմ կրնար առանց թռչելու
ուրիշ բաներու ուշ դնել", ծի-
ծաղելի կ'ըլլար: Հապա աղէկ կրնայ
ուրիշ շատ բաներու ալ ուշ դնել՝
թեւերը գոցելով:

Անոր ներհակ՝ գիտողութեան
ուսմունքներուն պաղութիւն պա-
հանջելուն համար միտքդ մի դներ
թէ ան ատեն կատարեալ մարդ
կ'ըլլաս՝ երբոր երեւակայութեանդ
լոյսը բոլորովին մարես, երբոր բա-
նաստեղծական զգացմունքը մեռցը-
նես: Ան զգացմունքը թէ որ աղէկ
կանոնաւորուի, մարդուս խելքը
տկարացընելու տեղը շատ անգամ
նաեւ կը զօրացընէ:

Ուսմանց մէջ, ինչպէս նաեւ քա-
ղաքականութեան մէջ, զգոյշ կեցիր
կուսակցութիւններէ և անոնց գը-

րութիւններէն կամ կարծիքներէն ։ Քննէ գրութիւնները որ կարենաս հասկընալ, ուրիշներուն հետ բաղդատել ու վրան դատաստան ընել. բայց անոնց գերի մ՚ըլլար ։ Ի՞նչ օգուտ առաւ իրենց հակառակութիւններէն Արիստոտելի, Պղատոնի և ուրիշ փիլիսոփայից գովիչներն ու պարսաւիչները, և կամ Արիս-թոն ու Թամսոն գովողները ու վար զարնողները ։ Այն կուռքի պէս պաշտուած ու գետնէ գետին զարնուած իմաստուններ ի՜նչ էին նէ ան մնացին. անով ոչ մէյմէկ աստուածներ եղան և ոչ մէյմէկ անխելքներ. իսկ որոնք որ իրար անցեր էին զանոնք սուտ կշիռքներու մէջ կշռելու՝ ծաղր եղան, և աշխարհք անոնց աղաղակներէն չարչարուեցաւ՝ բայց բան մը չսորվեցաւ ։

Ի՛նչ ուսմանն ետևէ ալ իյնաս՝ նայէ որ ձեռքէ չձգես հանդարտ միտքով ընտրութիւն ընելն ու բարակամտութեամբ դիտողութիւն ընելը, վերլուծութիւն ընելու համբե-

բութիւնը և շարադրութեան ոճը, և ամէն բանէ ալ աւելի՝ հաստատուն կամք ունեցիր ամենևին արգելքներէն չյաղթուելու, և ըրած յաղթանակներուդ վրայ չհպարտանալու. այսինքն՝ կամք ունեցիր միտքդ լուսաւորելու՝ որչափ որ Աստուած թոյլ տուեր է, քաջութեամբ՝ բայց առանց յանդգնութեան։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Վիճակի ընտրութիւն։

Շատ մեծ բան է վիճակի ընտրութիւնը։ Մեր նախնիքը կ՚ըսէին թէ աս ընտրութիւնը լաւ ընելու համար՝ Աստուծմէ լոյս խնդրելու է. չեմ գիտեր թէ այսօրուան օրս մենք ալ ան չըսենք նէ ինչ պիտի ըսենք։ Միտքդ վրադ ժողվէ, երկիւղածութեամբ մտածէ թէ առաննով ինչ վիճակ պիտի ունենաս մարդկանց մէջ, ու առ Աստուած աղօթք ըրէ։



Երբոր սրտիդ մէջ խմանաս որ աստուածային ձայնը կ'ըսէ քեզի, ոչ եթէ մէկ օր մը միայն՝ հապա շաբաթներով, ամիսներով, և միշտ մտքիդ մէջ աւելի տեղիք ընելով, թէ — " Աս վիճակը պիտի ընտրես ,, — բոլոր սրտանց ու համատատուն կամքը հնազանդէ ան ձայնին ։ Մտիր այն ճամբուն մէջ ու առաջ գնա . բայց ան վիճակին պէտք եղած առաքինութիւններն ալ հետդ առ ։ Այն առաքինութիւններէն մէկն ունենալէն ետև՝ ամէն վիճակ պատուական է յօժարութիւն ունեցողին համար ։ Քահանայութիւնն որ թեթևամտութեամբ ու զուարճութեանց փափաքովը լցուած սրտով մը յանձն առած մարդուն համար սոսկալի բան է, բարեպաշտ ու առանձնասէր մարդուն համար մեծ զմայլումըն ու փառաւորութիւն ունի. Նոյն իսկ վանական կամ կրօնաւորական կեանքն որ շատ աշխարհականներու անտանելի և խնչուան արհամարհելի բան մը կ'երեւայ.



զմայլելի վայելք ու փառաւորութիւն է այն հոգեսէր փիլիսոփային համար որ չի կարծեր թէ անօգուտ ըլլայ ինքը մարդկային ընկերութեան՝ ուրիշ քանի մը կրօնաւորաց ու աղքատ երկրագործներու վրայ բանեցընելով իր եղբայրսիրութիւնը: Քաղաքական պաշտօնը որ շատին ահագին ծանրութիւն մը կ'երեւնայ՝ այնչափ հոգացողութեան ու համբերութեան կարօտ ըլլալուն համար, սիրելի է այն մարդուն որ մեծ փափաք ունի իրեն նման մարդկանց իրաւունքը խելքով պաշտպանելու: Մէկն որ քաջասիրտ է բնութեամբ, ու միտքը դրած է թէ կեանքը հայրենեաց համար դնելէն փառաւոր բան չկայ, քանի որ զինուորութեան ազնիւ արուեստը մտածէ՝ խելքը գլխէն կ'երթայ:

Զարմանալի՛ բան. ամենայն վիճակ ամենէն գերազանցներէն ինչուան խոնարհ արուեստաւորինը, իրեն քաղցրութիւնն ու իրական պատիւը ունի. բաւական է որ մարդ ուզէ 'ի գործ դնել այն առաքի-



նութիւններն որ ամէն մէկուն մէջ հարկաւոր են։

Այնչափ մարդիկ որ իրենց ընտրած վիճակները կ'անիծեն՝ միայն անոր համար է որ քիչ մարդ կայ այն ըսած առաքինութիւններս 'ի գործ դնող։

Դուն երբոր խոհեմութեամբ մէկ վիճակ մը ընտրես, նայէ որ այն անդադար գանգատ ընողներուն չըհետևիս։ Արթուն կեցիր որ ընդունայն տեղը չի զզջաս ըրածիդ վրայ, ու վիճակէ վիճակ փոխուելու չի փափաքիս։ Աս աշխարհիս ամէն ճամբաներն ալ փշով լեցուն են. մէյմը 'որ տեղդ մէկուն մէջը դրիր՝ առաջ գնա. եւ քաշուիլը տկարամտութիւն է։ Յարատեւութիւնը միշտ աղէկ բան է՝ բաց 'ի յանցանքի մէջ յարատեւելէն. և միայն անիկայ կրնայ յուսալ նշանաւոր մարդ մը ըլլալու՝ ով որ ձեռք զարկած բանին մէջ յարատեւել գիտէ։




# ԳԼՈՒԽ ԺԶ.

## Սրտի անհանգստութեանց դէմ։

Շատ մարդիկ իրենց ընտրած վիճակին մէջ հաստատ կը կենան, ու սէր ալ կը կապեն անոր վրայ, բայց անհանգստութիւն մը կ'ունենան՝ թէ ինչու համար ուրիշ մը ուրիշ վիճակի մէջ աւելի պատիւ՝ աւելի յաջողութիւն ձեռք կը ձգէ. անհանգիստ կ'ըլլան՝ թէ ինչու իրենք բաւական համարմունք ու վարձատրութիւն չունին. անհանգիստ կ'ըլլան՝ թէ ինչու համար նախանձորդ շատ ունին և ինչու ամէնքը չեն ուզեր իրենցմէ վար մնալ։

Այսպիսի անհանգստութիւնները հեռացուր քեզմէ. մէկին որ անոնց գերի ըլլայ՝ ալ աս աշխարհիս մէջ իրեն համար երջանկութիւն չկայ. պէտք եղածէն աւելի ինքը վրայ համարմունք ցուցընելուն համար՝ ամբարտաւան կ'երեւնայ ու եր-



բերնին ծառայելն ալ կ՚ըլլայ, և քիչ համարմունք ցուցընելովը անոնց՝ որոնց վրայ որ կը նախանձի՝ անիրաւութիւն ալ կ՚ընէ։

Տարակոյս չկայ որ մարդկային ընկերութեան մէջ մէկուն մէկալին արդիւնքները ճիշդ համեմատութեամբ չեն վարձատրուիր։ Ինչպէս որ պէտք է լաւ աշխատող մարդը՝ շատ անգամ այնպէս խոնարհամիտ կ՚ըլլայ որ իր ըրածները ճանչցընելուն կերպին ալ չի գիտնար, և շատ անգամ ցած ու յանդուգն մարդիկ՝ անկէց աւելի յաջողութիւն ձեռք բերելու մտքով՝ անոր անունը կամ կը ծածկեն և կամ կ՚աւրեն։ Աշխարհս ասանկ է, և աս կողմանէ յոյս չկայ որ փոխուի։

Քեզի կը մնայ ուրեմն որ ծիծաղիս աս բանիս վրայ, ու ճար չկայ ըսելով սիրտդ հանգիստ բռնես։ Աղէկ տպաւորէ մտքիդ մէջ աս գօրաւոր ճշմարտութիւնը. բանը արդիւնք ունենալն է, և ոչ թէ մարդկանցմէ վարձատրուած արդիւնք մը ունենալն է։ Թէ որ վարձա-

տրեն՝ շատ աղէկ. չէ նէ արգիւնքը պահուելով կը շատնայ՝ Թէպէտ և չվարձատրուի ։

Մարդկային ընկերութեան մէջ այսչափ պակասութիւններ չէին ըլլար՝ Թէ որ ամէն մարդ ջանար իր անհանգստութիւնները փառաւորութիւնները սանձելու , չէ Թէ իր յաջողութիւնները աւելցնելու անհոգ ըլլալով, չէ Թէ ծոյլ և անզգայ ըլլալով, որ ասոնք ալ պակասութեան մէկալ ծայրերն են . այլ գեղեցիկ և ոչ խենդուխելառ ու նախանձոտ փառասիրութեանց ետևէ ըլլալով, այլ սահման դնելով անոնց այն կտորները՝ որոնցմէ անդին անցնիլը կարելի չերևնար . այլ ըսելով. “ Եթէ չկրցայ հասնիլ այն բարձր աստիճանին որուն ինքզինքս արժանի կը կարծէի , աս ցած աստիճանիս մէջ ալ նոյն մարդն եմ, ուստի և նոյն ներքին արժէքս ունիմ ” ։

Ան ատենը միայն կրնայ մէկը անհանգիստ ըլլալ ու փափաքիլ որ իր աշխատանացը համեմատ վարձք ընդունի՝ երբոր իրեն և իր ընտանեա-

ցը ապրուստին համար հարկաւոր է այն վարձքը ։ Հարկաւորէն անդին այն ամենայն աւելի յաջողութիւններուն՝ որոնց փափաքելը յանցանք չէ՝ անխռով սրտով պէտք է փափաքիլ ։ Թէ որ եկան՝ Աստուծոյ փառք․ անոնցմով քու կենացդ դառնութիւնները քիչ մը կրնաս անուշցնել․ ուրիշներուն ալ օգնութիւն մը ընել ։ Թէ որ չեկան՝ նոյնպէս Աստուծոյ փառք․ կրնաս լաւ կերպով ապրիլ նաև առանց շատ մխիթարութեանց, և թէ որ ուրիշներուն չկարենաս օգնութիւն մը ընել՝ խղճմտանքդ չպարսեր ։

Ձեռքէդ եկածին չափ աշխատէ որ օգտակար ու պիտանի քաղաքացի ըլլաս, և ուրիշներն ալ անանկ ընես, անկէց ետքը թող ինչ կ՚ուզէ ըլլայ ։ Տեսած անիրաւութիւններուդ ու խեղճութիւններուդ վրայ երբեմն երբեմն հառաչէ, բայց անոր համար նայէ որ արջ մը չդառնաս, մարդատեաց չըլլաս, այն սուտ մարդասիրութեան մէջ չիյնաս որ մարդատեցութենէն ալ գէշ

է , և մարդկանց բարիքը կ'ուզեմ ըսելով՝ արեան ծարաւի է , ու զարմանալի շէնք մը շինելու փափաքելով՝ եղածն ալ կը քանդէ , ինչպէս որ սատանան ալ մահու կը փափաքի :

Այն մարդն որ ընկերական մեճակին պակասութեանցը շտկուելուն թշնամի է , կամ անզգամ է և կամ խենդ . բայց ով որ ալ այն պակասութիւնները շտկել կ'ուզեմ ըսելով՝ անողորմութիւնը ձեռք կ'առնու , նոյնպէս անզգամ և կամ խենդ կ'ըլլայ , մանաւանդ թէ առջինէն ալ մէկ աստիճան մը աւելի :

Առանց սրտի հանդարտութեան եղած մարդկային դատաստաններուն մեծ մասը կամ սուտ են և կամ չարութեամբ եղած են : Միայն սրտի հանդարտութիւնն է որ քեզի ույժ պիտի տայ ներողութեան մէջ , սիրտ պիտի տայ բարեգործութեան մէջ , և պիտի ընէ զքեզ արդար , ներողամիտ և ամենուն սիրելի :

# ԳԼՈՒԽ ԺԵ·

## Զղջման և Ուղղութեան ։

*Սրտի անհանգստութիւնը մէկդի դիր ընելու ատենս՝ յիշեցի որ պէտք չէ ծուլութեան տալ ինքզինքդ , և մանաւանդ պէտք չէ որ ծուլանաս ինքզինքդ անդադար շտկելու լաւցնելու ։*

*Այն մարդն որ կ՚ըսէ թէ , “ իմ բարոյական կրթութիւնս լմնցած է , և ըրած գործքերովս հաստատուած է ” կը խաբուի ։ Պէտք է որ մենք միշտ սորվինք թէ ինչպէս պիտի բռնենք զմեզ աս օրս և ասկէց ետքը . պէտք է որ մեր առաքինութիւնը միշտ կենդանի պահենք՝ նոր նոր բարեգործութիւններ ընելով . պէտք է որ միշտ ուշ դնենք մեր սխալմունքներուն ու ցաւինք անոնց վրայ ։*

*Այո , պիտի ցաւինք ։ Ամենաճըշմարիտ խօսք է եկեղեցւոյ ըսածը*

թէ մեր բոլոր կեանքը պիտի ըլլայ անդադար զղջալ ու ինքզինքնիս շտկելու աշխատիլ։ Քրիստոնէութիւնը աս ըսել է։ Ինքն իսկ Վոլդէռ, ան փայրկեաններէն մէկուն մէջ որ քրիստոնէութիւնը վար զարնելու կատաղութիւնը մէկդի կը դնէր, կ'ըսէ. « Խոստովանանքը գե-
„ րագանց բան է. սանձ մըն է յան-
„ ցանաց՝ խիստ հին ատենէ 'ի վեր
„ հնարուած. հին ատենի ամէն
„ խորհրդատօնից մէջ խոստովա-
„ նանքը գլխաւոր արարողութիւն-
„ ներէն մէկն էր։ Այն խելացի սո-
„ վորութեանը հետեւեր ենք մենք
„ ու սրբազան բան մը ըրեր ենք. և
„ իրաւցընէ ատելութեամբ փտտած
„ սրտերը հաշտութեան ու ներո-
„ ղութեան դարձընելու համար մէկ
„ հատիկ դեղ է „։

Այն բանն որ 'Վոլդէռի պէս մարդը երես ունի գովելու՝ ամօթ է եթէ չհասկընայ մէկն որ քրիստոնեայ եմ ըսելով կը պարծի։ Մտիկ ընենք մեր խղճմտանքին. կարմրինք ամչնանք այն պակասութեանց վը-

բայ որ մեր խիղճը երեսնիս կը զարնէ . խոստովանինք որ մաքրուինք անոնցմէ . և աս սուրբ աւագանէն հեռու չկենանք ինչուան մեր կենաց ետքի օրը ։ Թէ որ աս բանս Թմրած սրտով չընենք , Թէ որ այն յանցանքներն որ կը յիշենք՝ միայն բերնով չդատապարտենք , Թէ որ զղջման հետ բոլոր սրտանց փափաք մըն ալ ունենանք ինքզինքնիս շտկելու , ով որ կ'ուզէ Թող ծիծաղի , բայց ասկէ օգտակար , ասկէ գերազանց և ասկէ պատուաւոր բան չկընար ըլլալ մարդուս ։

Երբոր գիտես Թէ պակասութիւն մը ըրիր , նայէ որ շուտ մը դարմանն ալ ընես ։ Միայն դարման ընելովդ կրնաս խղճմտանքդ հանդչեցընել ։ Որչափ որ դանդաղիս դարմանն ընելու , այնչափ աւելի սիրտդ յանցանքին հետ կը կապուի , ան կապը օրէ օր կը հաստընայ , և հոգիդ համարումը իր վրայէն կորսընցընելու կը վարժի ։ Վա՜յ այն մարդուն որ սրտանց իր վրայէն համարումը կը կորսընցընէ . վա՜յ անոր որ կը ձևա-

ցընէ թէ համարում ունի ինքն իր վրայ, ու խղճմտանքին մէջ փոտու-թիւն մը կը տեսնէ որ պէտք չէր ըլ-լար. վա՜յ անոր որ այնպիսի փոտու-թիւն մը ունենալէն ետքը՝ միտքը կը դնէ որ չտեսնելու զարնելէն զատ ուրիշ ճար չկայ: Այնպիսին անկեց ետքը գերագոյն արարածոց մէջը տեղ չունի. ընկած աստղ մըն է, ա-րարածոց դժբաղդութիւն մըն է:

Թէ որ աներես երիտասարդին մէկը տեսնելով որ դուն իրեն պէս պակասութեանցդ մէջ յամառեալ չես կենար՝ դքեզ տկար մարդու տեղ դնէ, պատասխան տուր իրեն թէ աւելի զօրաւոր է մոլութեան դէմ կեցողը քան թէ մոլութեան գերի եղողը. պատասխան տուր իրեն թէ մեղաւորին յանդգնութիւնը սուտ քաջութիւն է, վասն զի տա-րակոյս չկայ որ մահուան դուռը հա-սած ատենը՝ թէ որ կատաղութեան մէջ չիյնայ՝ կը կորսնցընէ այն քա-ջութիւնը. պատասխան տուր իրեն թէ իմ ուզած քաջութիւնս այն է որ ուրիշներուն արհամարհութիւնը

քանի տեղ չգտնեմ երբոր աստղերնու-
թեան եանէ ըլլալու համար՝ չարու-
թեան ճամբէն ետ կենամ :

Յանցանք մը որ ընես, չըլլայ թէ
սուտ խօսիս՝ չըրի ըսելով, կամ յան-
ցանքդ թեթեւցընելով : Ցած տկա-
րութիւն մըն է ստախօսութիւնը :
Սխալեցայ ըսէ, վեհանձնութիւն
ըրած կ'ըլլաս. և սխալեցայ ըսելուդ
համար ինչ ամօթ որ քաշես՝ անոր
պտուղն ալ կ'ըլլայ որ լաւ մարդ-
կանցմէ գովեստ կը լսես :

Թէ որ յանկարծ ուրիշի սիրտը
ցաւցընես, աղնիւ խոնարհութիւնը
ձե՛ռք առ ու թողութիւն խնդրէ
իրմէ : Որովհետև բոլոր քու վարքդ
պիտի ցուցընէ վատ մարդ չըլլալդ,
մէկը չըլլար որ անոր համար վատ ը-
սէ քեզի : Նախատինք մը ընելէն ետ-
քը՝ անոր մէջ յամառիլ կենալ, ու
պատուաւոր կերպով խօսքը ետ կան-
չելու տեղը մենամարտութեան ել-
լել կամ յաւիտեան ոխ պահելը,
ամբարտաւան ու կատաղի մարդ-
կանց ծաղրածութիւններ են, այն-
պիսի վատութիւններ են որ փուճ

տեղը կ՚աշխատին պատիւ անունը տալու անոնց ։

Միայն առաքինութեան մէջ է պատիւը, առաքինութիւնն ալ ասով միայն առաքինութիւն կ՚ըլլայ որ մարդ անդադար զղջայ յանցանքին վրայ ու առաջադրէ ինքզինքը շտկելու ։

# ԳԼՈՒԽ ԺԸ.

## Ամուրի կեանք ։

Ընկերական վիճակներուն մէջ քեզի յարմար երեւցածը ընտրելէդ ետքը, երբոր կը տեսնես որ բարի սովորութիւններով այնպիսի հաստատութիւն մը առեր է բնաւորութիւնդ որ իրաւցընէ մարդ եղեր ես, — ան ատենը միայն, և ոչ անկէց առաջ, — թէ որ կ՚ուզես աշխարհք մտնել՝ այնպիսի ընկեր մը ընտրէ որ քու սիրոյդ արժանաւորութիւն ունենայ ։

Բայց ազատ կեանքդ ձգելէդ ա-

ռաջ լաւ մտածէ թէ արդեօք աւե-
լի աղէկ է ազատ մնալդ թէ չէ ։

Թէ որ տեսնես որ ինչուան ան
ատենը չես կրցած սանձել բարկու-
թեան, նախանձու, կասկածոտու-
թեան, նեղսրտութեան, տխրասպե-
տութեան, ու խստութեան կիր-
քերդ, այնչափ՝ որ յուսաս թէ ըն-
կերոջ մը հետ կարենաս սիրով ա-
պրիլ. սիրտ ըրէ ու ամուսնութեան
մխիթարութիւններէն ետ կեցիր ։
Թէ որ անանկով մէկուն հետ կա-
պուիս, զինքն ալ զքեզ ալ կը թը-
շուառացընես ։

Ըսենք թէ մէկը չգտար որ ունե-
նայ այն ամենայն կատարելութիւն-
ներն որ հարկաւոր կ'երեւնան զքեզ
գոհ ընելու և իրեն ալ զքեզ հա-
ճոյացընելու. չըլլայ թէ յանձն առ-
նուս կապուիլ այնպիսի մէկու մը
հետ ։ Քու պարտքդ է որ աւելի
յանձն առնուս ամուրի մնալ՝ քան
թէ չուզեցած սէրդ երդմամբ խոս-
տանալ ։

Բայց աս ամուրի կեանքդ թէ եր-
կընցընես և թէ միշտ պահես, նայէ

որ անոր պատուիրած առաքինու-թիւններուն պատիւ ընեն, ու օ-գուտներուն յարգը ճանչնան։

Այժ, այն կեանքն ալ իր օգուտ-ներն ունի։ Եւ մարդս ինչ վիճակի մէջ ալ որ գտնուի, անոր օգուտնե-րը և օգուտներուն յարգը պէտք է ճանչնայ. ապա թէ ոչ, ան վիճա-կով ինքզինքը ապերջանիկ կամ ան-պատիւ պիտի կարծէ, և իր սրտէն առաքինութիւն գործելու քաջու-թիւնը պիտի պակսի։

Շատ ճարտասան ու զօրաւոր մարդիկ, ուզելով կատաղութիւն մը ցուցընել մարդկային ընկերու-թեան անկարգութեանցը դէմ, և թերևս կարծելով թէ այն անկար-գութիւնները չափէ դուրս մեծ ե-րևցընելով՝ անոնց դարման մը ըլ-լայ, ջանք ըրած են որ Մասնաւոր կերպով մը խայտառակեն դուրս հա-նեն շատ ամուրի մարդկանց ըրած պակասութիւնները, և քարոզեն թէ ամուրի մնալը բնութեան դէմ բան է, սոսկալի թշուառութիւն է, ու ժողովրդեան մը աւրուելուն ա-

միննէն զօրաւոր պատճառն ան է ։

Նայէ որ այսպիսի չափազանցական ձեւերով գլուխդ չտաքնայ ։ Ամուրի կեանքն ալ մեծամեծ պակասութիւններ ունի . ատոր ալ ինչ կ՚ըսէ ։ Բայց միթէ մարդուս ձեռք ու ոտք ունենալը՝ ձեռքով ոտքով կռուըտելուն պատճառ մը չէ՞ . և սակայն ոչ ոք կ՚ըսէ անոր համար թէ ձեռք ոտք ունենալը շատ գէշ բան է ։

Անոնք որ խորհրդածութիւն խորհրդածութեան վրայ ընելով՝ կը ջանան ցուցընել թէ բարոյական անկարգութիւնը ամուրի կենաց անհրաժեշտ հետեւանքն՚է , թող նային մէյմը հաշուեն նաեւ այն չարիքներն որ առանց յօժարութեան եղած ամուսնութիւններէն կը ծագին ։

Հարանիքին կարճ ուրախութիւններէն ետքը ձանձրութիւն մը կու գայ , սոսկում մը կու գայ թէ ազատութիւնս ինչպէս կորսնցուցի . հասկընալ մը կու գայ թէ ըրած ընտրութիւնս առանց լաւ մտածելու եղաւ , բնաւորութիւններս իրարու

յարմարելու պէս չեն ։ Երկու կող-
մէն ալ և կամ միայն մէկ կողմէն
տարջանքը տիրելուն պէս , անհա-
մութիւնները , հակառակութիւն-
ները ու երկայն երկայն ու անո-
ղորմ դառնութիւնները կը սկսին ։
Ամուսինը , որ երկուքին մէջ բնու-
թեամբ աւելի քաղցրաբարոյ ու ազ-
նուասիրտն է , ամօթաբար գոհ կ'ըլ-
լայ այն դժբաղդ անհամաձայնու-
թեանը , կամ մինչև 'ի մահ սրտցա-
ւութեան մէջ ընկղմելով , և կամ —
որ աւելի ալ չարն է — իր բնութե-
նէն դուրս ելլելով , բարեսրտու-
թիւնը կորսնցընելով , այնպիսի յո-
ժարութեանց տեղիք տալով՝ որոնց-
մով կարծէ թէ ամուսնական սիրոյն
պակասութիւնը կրնայ լեցընել , և
սակայն անուանարկութենէ ու խղճ-
մտանքի անհանգստութենէ զատ
ուրիշ օգուտ չտեսներ ։

Գէշ կերպով սկսուած ամուսնու-
թենէն ծնած զաւակաց առաջին
դպրոց՝ իրենց հօրը կամ մօրը և կամ
երկուքին մէկէն անարժան վարքն
է . ուստի կ'ըլլան քիչ սիրուած կամ

գէշ՝ կերպով սիրուած տղայք, քիչ կամ գէշ դաստիարակութիւն կ'առնուն, իրենց ծնողացը պատկառանք չեն ունենար, իրենց եղբարցը վրայ սէր չեն ունենար, և ընտանեկան առաքինութեանց համը չեն առներ, — որ քաղաքական առաքինութեանց ալ հիմը անոնք պիտի ըլլային:

Աս ամէն բաները այնչափ ստէպ կը պատահին՝ որ աչքդ բանալուդ պէս կը տեսնես. չկրնար մէկն ըսել ինծի թէ չափազանցութիւն է ըսածդ:

Ամուրի կեանքն ալ պակասութիւններ չունի չեմ ըսեր. բայց ով որ մէկալ պակասութիւններուն ալ լաւ մը ուշ դնէ՝ անտարակոյս պզտիկ բաներ չհամարիր, ու ինծի հետ կը զրուցէ շատ ամուսնացելոց համար. — “ Ո՛հ. երանի՛ թէ այն սոսկալի երդումն ըրած չըլլային ”:

Մարդկանց մեծ մասին կոչումը աշխարհք մտնել է. բայց ամուրի մնալն ալ բնութենէ դուրս բան չէ: Ծաղրական բան է նեղանալը թէ

ինչո՛ւ համար ամէնքն ալ չեն աշխատիր մարդկային ազգը բազմացընելու ։ Ամուրի կեանքը, երբոր իրաւացի պատճառներով ընտրուի ու պատուաւոր կերպով պահուի, ամենեւին ցածութիւն չէ ։ Մանաւանդ թէ ամենայն պատուոյ ալ արժանի է՝ ինչպէս այն ամենայն խոհական նուիրմունքներն որ բարի վախճանաւ մը կ՚ըլլան ։ Ընտանեաց հոգէն ազատ ըլլալով զմարդ, աւելի ժամանակ ու աւելի կարողութիւն կու տայ անոր որ խորունկ գիտութեանց ետեւէ ըլլայ, և կամ հաւատոյ գերագոյն պաշտօններուն ծառայէ. աւելի միջոցներ կու տայ անոր՝ որ իր օգնութեանը կարօտ ազգականներուն թեւ թիկունք ըլլայ. աւելի ազատութիւն կու տայ իրեն որ շատ աղքատաց վրայ տարածէ իր գթութիւնը ։

Եւ միթէ այս ամենայն բաները բարիք չե՞ն ։— Ասոնք անօգուտ մտածութիւններ չեն ։ Ամուրի կեանքը ձգելու կամ յանձն առնելու համար՝ պէտք է գիտնայ մարդ թէ ինչ

բան է յանձն առածը, և կամ մէկդի ձգածը ։ Կողմնասիրութեամբ եղած մեծամեծ խօսքերը մարդուս դատմունքը կը շփոթեն ։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

### Պարփ– Կանանց ։

Ամէն բան ծաղր ընող վատ չնականութիւնը՝ ցածութեան հոգին է . սատանայ մըն է՝ որ անդադար զրպարտութիւններ կը հանէ մարդկային ազգին վրայ՝ որպէս զի առաքինութիւնը ծիծաղելի բան մը ընէ անոր , և ոտքի տակ առնել տայ ։ Որչափ բաներ որ կան հաւատոյ նախատինք մը բերող՝ զանոնք կը ժողվէ , ու ներհակ բաները չտեսնելու զարնելով կը կանչէ . — “ Աստուած ինչ է . քահանայից տուած խրատներուն և կրօնական կրթութեան ազդեցութիւնն ինչ բան է . ամէնն ալ մոլեռնախանձ մարդկանց երևակայութիւններն են ” ։ Որչափ բա-

ներ որ քաղաքականութեան նախատինք մը կը բերեն՝ անոնք կը ժողվէ ու կը կանչէ . — “ Օրէնքը ի՞նչ բան է . քաղաքական կարգն ի՞նչ է . հայրենասիրութիւնն ի՞նչ է . ամէնն ալ կառավարողին կամ կառավարել ուզողին կողմանէ խորամանկներու և զօրաւորներու պատերազմ է , հնազանդողին կողմանէ ալ վատութիւն է ,, : — Որչափ բաներ որ նախատինք մը կը բերեն ամուրի կենաց , ամուսնութեան , հայրութեան , մայրութեան , որդիութեան , ազգականութեան , բարեկամութեան , անոնք կը ժողվէ ու աներես ուրախութեամբ մը կը կանչէ . — “ Հասկըցայ որ ամէնն ալ ինքնահաճութիւն , խարդախութի̃ւն , հեշտամոլութիւն , իրարու դէմ ատելութիւն ու արհամարհութիւն է եղեր ,, :

Այս դժոխային ու ստախօս իմաստութեան հարազատ պտուղներն են՝ ինքնահաճութիւն , խարդախութիւն , հեշտամոլութիւն , իրարու դէմ ատելութիւն ու արհամարհութիւն :

Ուրեմն ինչպէս աս ցածութեան գարշելի հոգին, որ ամէն աղէկ բան գետնէ գետին կը զարնէ, վերջի աստիճանի թշնամի չըլլայ կանանց առաքինութիւններուն և զանոնք վար ձգելու չաշխատի ։

Ամէն ժամանակ ամէն ջանք ըրեր է աս հոգին որ կնիկ մարդը անարգ բան մը երևցընէ, այնպէս մը հասկըցընէ թէ կին ըսելը՝ նախանձ, խորամանկութիւն, փոփոխամտութիւն, փառամոլութիւն ըսել է, և ցուցընէ՝ թէ ոչ բարեկամութեան սրբազան կրակին ունին կանայք, և ոչ սիրոյ անկաշառ հաստատարմութիւնը ։ Ո՛ր և իցէ կին որ մէկ կատարելութեան մը տէր է՝ կարգէ դուրս բան մը սեպեր է ։

Բայց մարդիկ քանի որ քաղաքականութեան ետևէ ընկան՝ սկսան կանանց պաշտպանութիւն ընել ։ Քրիստոնէութիւնը կանանց բնութիւնը բարձրացուց՝ արգիլելով բազմակնութիւնն ու անպատշաճ բարեկամութիւնները. և մարդացեալ Բանէն ետքը՝ առաջին մարդ-

կեղէն սանրձուած, ամէն սուրբերէն հրեշտակներէն ալ վեր՝ կին մը ցուցընելով։

Հիմակուան ատենի ընկերութիւնը հասկըցաւ սա ազնուական մտածութեան ոյժը։ Եւրոպացւոց բարբարոսութեան ատենները՝ սիրոյ զարդերովը զարդարուեցան ասպետութիւնները. և մենք քաղաքական կրթութիւն առած քրիստոնեայքս, հին ատենի ասպետութեան որդիքս, այն մարդը բարեկիրթ կը համարինք՝ որ պատիւ կ՚ընէ հեզաբարոյ, ընտանեկան առաքինութիւններով ու շնորհալի կերպերով զարդարուած բնութեան։

Եւ սակայն ազնուական ախորժակաց և կանանց հին թշնամին մնաց աշխարհիս երեսը։ Եւ երանի՜ թէ միայն չկրթուած մտքերն ու ցած խելքերը մոլորցընէր. երբեմն նաև զարմանալի հանճարները կ՚ապականէ, և սա ապականութիւնը հոն կը սկսի միշտ՝ ուր որ կը դադրի աստուածպաշտութիւնը, ուր որ միայն կրնայ սուրբ ընել զմարդիկ։

Փիլիսոփաներ (կամ իրենք իրենց փիլիսոփայ ըսողներ) տեսնուած են որ երբեմն մարդկային ազգին համար մեծ նախանձայուզութիւն կը ցուցընէին, երբեմն ալ՝ անկրօնութեամբ մոլեգնած՝ պժգալի գրուածքներ կը հանէին, ամենայն կերպով աշխատելով որ մարդուս զգայութիւնները գինովցընեն անպիտան բանաստեղծութիւններով ու վիպասանութիւններով, և ամէն տեսակ խորհրդածութեամբ՝ պատմութիւններով ու առասպելներով:

Տեսնուած է Վոլթէռ մը, գրագիտաց մէջ ամենէն աւելի հրապուրիչը, (որ քանի մը կատարելութիւններ ունէր, բայց ցած կիրքերով և ուրիշները ծիծաղցընելու անսանձ ու լիրբ փափաքով մը ապականած էր) որ նստաւ երկայն բանաստեղծութիւն մը շինեց՝ կանանց պատիւը անարգելու մտքով, այն վեհանձն ու դժբաղդ Յովհաննա Տ'Արքը անարգելու մտքով որ իր հայրենեացը ամենէն մեծ դիւցազնուհին էր: Ըզաբէլ տիկինը իրաւունք ունի ա-

նուաճելու այն գիրքը՝ Եղեռն ընդ-դէմ ազգային պատուոյ ։

Անշան և նշանաւոր մարդիկնե-ներէ, մեռած ու կենդանի հեղի-նակներէ, նաև քանի մը լիրբ կա-նանցմէ որ իրենց ամօթխած բնու-թեանը նախատինք են, վերջապէս հազարումէկ կողմէ շատ անգամ ակ-նի լսես չորս դիդ այն ցած հոգւոյն ձայնին որ կը կանչէ. "Արհամարհէ կնիկ մարդիկը" ։

Մերժէ հեռացուր զուն քովէդ այդ վատ փորձութիւնը. ապա թէ ոչ, դուն ալ՝ կանացածին ըլլալով արհամարհելի կ'ըլլաս ։ Հեռու քա-լէ այն մարդիկներէն որ կանանց վրայ իրենց մայրը չեն պատուեր։ Ոտքի տակ կոխկրտէ այն գրքերն որ զկանայս վար կը զարնեն՝ անա-մօթութիւն քարոզելով ։ Ազնուա-կան համարում ունենալով կանանց պատուոյն վրայ, նայէ որ միշտ ար-ժանաւոր ըլլաս պաշտպանելու զա-նիկայ՝ որ քեզի կեանք տուեր է, պաշտպանելու քու քոյրերդ, պաշտ-պանելու թերևս օր մը այնպիսի

անձ մը որ քու զաւակացդ մայր ը-
սուելու սրբազան պատիւը պիտի
ունենայ ։

Անիկայ քեզի պահապան հրեշ-
տակի մը պէս ըլլայ․ ամէն տեսակ
չարութենէ զքեզ հեռացնելու,
և ամէն տեսակ գովելի գործողու-
թեան զքեզ դրդելու համար անի-
կայ ըլլայ քեզի աստուածային հրա-
մանաց կենդանի նկարագիրը ։ Ի՛նչ
բանի որ ձեռք կը զարնես՝ նայէ որ
ինքն ալ հաւնի, նայէ որ այնպէս
ընես՝ որ այնպիսի ազնիւ հոգին
զքեզ իրեն բարեկամ ունենալուն
վրայ ուրախ ըլլայ․ նայէ որ պատիւ
ընես իրեն, չէ թէ մարդկանց առ-
ջև, որ բան չէ, հապա Աստուծոյ
ամենատես աչքին առջևը ։

Թէ որ ընկերդ այնչափ վեհանձն
և այնչափ բարեպաշտ է, քու սէրդ
իրեն վրայ որչափ ալ մեծ ըլլայ՝ չա-
փազանց չըլլար, կռապաշտութիւն
չըլլար ։ Բո՛ւն անոր համար կը սիրես
զինքը՝ որովհետև անոր կամքը Աս-
տուծոյ կամացը հետ բոլորովին հա-
մաձայն է․ մէկուն վրայ ունեցած

համարումդ մեկալին կ'երթայ, մա-
նաւանդ թէ համարումդ միշտ մե-
կուն՝ այսինքն Աստուծոյ կամացը
վրայ կ'ըլլայ: Անչափ՝ որ եթէ
յանկարծ անոր կամքը Աստուծոյ
կամացը հակառակ ելլելու ըլլան,
ան քու զմայլումդ պիտի անցնի,
սերդ վրայէն պիտի պաղի:

Շատ հասարակ խելքի տէր մար-
դիկ աս գերազանց սէրը երեւակայա-
կան բանի մը տեղ կը դնեն. այն-
պիսիները չեն գիտեր ազնուա-
բարոյ կին ինչ ըսել է: Ցաւակից
եղիր անոնց խեղճ մտածութիւն-
ներուն: Անկարելի բան չէ այնպի-
սի զուտ սէր ունենալ որ անով ա-
ռաքինութեան յորդորուի մարդ.
կը գտնուի այսպիսի սէր, թէպէտ
և քիչ անգամ. և մարդիկ պէտք էր
որ ըսէին. — «Կամ այսպիսին,
կամ և ոչ մէկը»:



# ԳԼՈՒԽ ԻԱ․

## Պարսաւելի սէր։

Բայց, նորէն կ'ըսեմ, աղէկ նայէ որ չըլլայ թէ մէկ կին մը առաքինի կարծելով զարմանաս վրան, ու իրօք անանկ չըլլայ։ Ան ատեն քու սէրդ վիպասանական սէր մը կը դառնայ, այսինքն ծաղրական ու վնասակար սէր, և սիրտդ անարժան կերպով մը զոհ ըրած կ'ըլլաս ամենէն սնոտի կուռքի մը։

Համարման ու մեծ համարման արժանի կին կը գտնուի աշխարհիս վըրայ՝ իրաւ է․ բայց կը գտնուին, ու շատ կը գտնուին այնպիսի կանայք ալ՝ որ գէշ դաստիարակութեամբ, ուրիշի չար օրինակովը և իրենց թեթևութեամբը աւրուած են, որ առաքինի մարդուն փափաքանացը յարդը ճանչնալու չափ ալ կատարելութիւն չունին, որ աւելի կը սիրեն իրենց տեսքին ու

առերեւոյթ խելքին համար հաճոյա-
նալ ուրիշներուն՝ քան թէ ազնուա-
կան զգացմունքներուն պատճառա-
ւորող արժանի ըլլալ ։

Բայց այսպիսի անկատար կանայք
սովորաբար շատ մնասակար կ՚ըլլան,
ու նաեւ բոլորովին ցած բնաւորու-
թիւն ունեցողներէն ալ աւելի մնա-
սակար ։ Ոչ միայն իրենց տեղքովը
ու հնարքներովը կը խաբխըբեն, հա-
պա շատ անգամ նաեւ քանի մը ա-
ռաքինութիւններով, եւ յոյս մը տա-
լով թէ իրենց վրայ պակասութիւն-
ներէն աւելի կատարելութիւններ
կան ։ Մի ընդունիր դուն այն յոյ-
սը՝ երբոր կը տեսնես վրանին չա-
փէ դուրս պարծենկոտութիւն
կամ ուրիշ ծանր պակասութիւն-
ներ ։ Անոնց վրայ դատաստան ըրած
ատենդ անաչառ եղիր, չէ թէ վրա-
նին չարախօսութիւն ընելու կամ
պակասութիւննին մեծցընելու հա-
մար, հապա որպէս զի թէ որ ան-
վայել որոգայթի մը մէջ իյնալու
վախ ունիս նէ՝ կարենաս առաջուց
փախչիլ ազատիլ ։ ●

Որչափ որ ընութեամբ գիւղամէտ ես սէր և պատկառանք ցուցընելու արժանաւոր անձի մը, այնչափ աւելի պարզ պիտի համարիս քեզի որ մէկուն չափաւոր առաքինութիւններովը գոհ ըլլաս ու բարեկամութեան պատուական անունը չտաս իրեն ։

Անկիրթ երիտասարդներն ու իրենց նմանները կը ծիծաղին վրադ․ հպարտ՝ վայրենի ու կոպիտ կ՚ըսեն քեզի․ հոգ չէ․ արհամարհէ անոնց դատաստանները ։ Ոչ հպարտ եղիր, ոչ վայրենի, ոչ կոպիտ, բայց շռայլութեամբ ալ զգացմունքներդ մի վատներ․ սիրտդ ազատ պահելու համար ամուր կեցիր, և կամ մէկուն նուիրելու ալ ըլլաս՝ այնպիսույն նուիրէ որ ինչպէս պէտք է նէ արժանաւորութիւն ունենայ ։

Մէկն որ արժանաւոր կնոջ մը վրայ սէր կը ձգէ՝ գերիի պէս անոր շողոքորթութիւններ ընելու համար ժամանակը չկորսընցըներ ։ Կինն ալ այն կերպերէն չախորժիր․ կ՚ամըչնայ այնպիսի պարապորդ ու ան-

համցած բարեկամ ունենալուն. այն մարդուն միայն բարեկամութեանը վրայ համարում կ'ունենայ՝ որ պարզմիտ ու ծանրակաց է, և սիրոյ վրայ խօսելու այնչափ փոյթ չըներ՝ որչափ սիրելի ըլլալու՝ գովելի սկզբունքներով ու գովելի գործքերով։

Այն կինն որ թող կու տայ որ մէկը տղու պէս գերի առնէ իր ոտքը ընկած, ցածութեամբ իր հազար ու մէկ խենդ ու խելառ հաճոյքները կատարելու խոնարհած, և խելքը միտքը չինծու գեղեցկութեանց ու կատարատուածքներու տուած, յայտնի կ'իմացընէ որ ոչ անոր վրայ ազնիւ մտածութիւն ունի և ոչ իր վրայ։



## ԳԼՈՒԽ ԻԲ.

Աղջկանց ու ամուսնացելոց մեծարանք :

Թէ ամուրի ըլլաս և թէ աշխարհէք մտած՝ նայէ որ կոյս և ամուսնացեալ վիճակաց վրայ մեծարանք ունենաս :

Աղջկան մը անմեղութենէն ու բարի համբաւէն աւելի փափուկ բան չկայ ։ Զգուշացիր որ չըլլայ թէ ամենափոքր աղաւտ կերպով կամ մէկ խօսքով անոր միտքը պըղծես և կամ սիրտը այլայլես ։ Զգուշացիր որ աղջկան մը վրայօք, թէ անոր դիմացը ըլլայ և թէ ետևէն՝ այնպիսի խօսք մը ըսես՝ որով ուրիշներուն աչքին զանիկայ թեթևամիտ ու սիրոյ դիւրագրգիռ երևցընես ։ Արտաքին ամենամանր նշանն ալ բաւական է աղջկան մը անունը աւրելու, անոր դէմ զրպարտութիւններ բարդելու, և նաև ամուսնութենէ մ'ալ զրկելու որ կրնար

զանիկայ երջանիկ ընել ։ Թէ որ սրտիդ մէջ աղջկան մը վրայ սիրով վառուիս, որուն հետ չես կրնար կարգուիլ, սրտիդ բոցը նայէ որ չյայտնես, մանաւանդ Թէ ամէն ջանքով ծածկելու նայիս ։ Թէ որ իմանայ անիկայ քու զինքը սիրելդ, կարելի է որ քու դիմացդ Թուլնայ ու անով Թշուառ աղջիկ մը զոհ ըլլայ ։

Նոյնպէս Թէ որ տեսնաս որ աղջիկ մը քեզի հետ սիրով կապուեր է, զորն որ դուն չես ուզեր և կամ չես կրնար քեզի կին առնուլ, անոր խաղաղութեանը ու պատուոյն խընամք ունեցիր ։ Խեղճ անմեղի մը 'ի սէր դրդուելուն վրայ զուարճանալէն, որն որ անոր տրամութիւն ու ամօթ միայն կրնայ պատճառել, աւելի մեծ եղեռնական ընդունայնասիրութիւն չկայ ։

Ամուսնացեալ կանանց հետ ալ զգուշաւոր ըլլալու ես ։ Անոնցմէ մէկուն վրայ ունեցած անմիտ սէրդ, և կամ անոնց մէկուն քու վրադ ունեցած անմիտ սէրը քեզի մեծ Թը-

չուստուութիւն ու անուանակատարութիւն մը կրնայ պատճառել ։ Իրաւ դուն անկէ աւելի քիչ կը վատահամբաւես, բայց մանաւանդ մտածելով որ ինչ աստիճանի վտանգաւորութիւն է կնոջ մը, որ իր երիկը ու ինքզինքը անարգուելու վտանգի մէջ կը դնէ, այս մտածելով կ'ըսեմ՝ թէ որ սիրտդ քիչ մը գութ ունիս, ազատեցիր անոր վտանգէն, ու վայրկեան մ'ալ զանիկայ այն վտանգին մէջը մի թողուր. կարէ այն սէրը՝ զորն որ Աստուած ու օրէնքները կը դատապարտեն ։ Բաժնուելովնիդ այս՛ պիտի վշտացնի քու ու քու սիրածիդ սիրտը, բայց փոյթ չէ. առաքինութիւնը ամէն զոհի արժանի է. վստահիմ է անիկայ որ այս զոհս ընել չզլանար ։

Ամուսնացեալ կնոջ մը ու արտաքին մարդու մը մէջ անմեղադրելի ընտանութիւնը պիտի ըլլայ՝ միայն Ճշմարիտ առաքինութեան ճանաչողութեան վրայ հաստատեալ իրարու վրայ արդար ու բարի համարում մը, այնպէս ըլլալով որ երկու կող-

մանէ ալ ուրիշ ամէն սիրոյ վեր՝ իրենց անձնական պարտուցը հաս-տատուն սէրը յաղթող ըլլայ միշտ ։

Գարշէ իբրև մեծ ապականութե-նէ մը կնոջ մը իր երկանը վրայ ու-նեցած սէրը յափշտակելէն ։ Թէ որ արժանի է անիկայ իր կնոջը սիրոյն՝ քու նենգութիւնդ մեծ եղեռնա-գործութիւն է ։ Իսկ թէ անարժան երիկ մըն է, անոր յանցաւորութիւնը քեզի իշխանութիւն չտար վատահամ-բաւելու խեղճը ։ Գէշ երկան մը կնիկը ուրիշ ճամբայ չունի բռնելու՝ բայց եթէ համբերութեամբ կրել ու հա-ւատարիմ մնալ ։ Անգութ անձնա-սէր է այն մարդը՝ որ իբր թէ կը-նիկը մխիթարելու պատրուակաւ՝ զանիկայ մեղապարտ սիրոյ մը մէջ կը ձգէ . և թէ որ իրաւցընէ ՚ի գթոյ շարժեալ է՝ այն գութը՝ խաբեբայ, աղետալի ու մեղադրելի գութ մ՚է ։ Այդ կնիկը քու սիրովդ վառելով իրեն թշուառութիւնը կը շատցը-նես , և չսիրած երիկ մը ունենալուն վշտացը վրայ՝ կ՚աւելցընես նաև զքեզ սիրելով ու քու յարգդ չափէն

աւելի մեծցընելով զանիկայ ալ աւելի տանելու տառապանքը . կ'աւելցընես Թերեւս երկանը նախանձը, կ'աւելցընես նաեւ կնոջը իր յանցաւոր ըլլալուն վհատեցուցիչ ճանաչողութիւնը ։

Ընտիր երիկ մը չունեցող կնիկ մը անխռով ըլլալով միայն կրնայ խաղաղութիւնը գտնալ . ով որ ուրիշ խաղաղութիւն մը կը խօստանայ անոր՝ կը ստէ ու ցաւոց մէջ կը ձգէ զանիկայ ։

Այն կնիկներէն ալ՝ որ իրենց առաքինութեանցը համար սիրելի եղած են քեզի՝ զգուշացիր ինչպէս օրիորդներէ, որպէս զի իրենց հետ ունեցած բարեկամութեանդ պատճառաւ ուրիշներուն նախատական կասկածներ չառնաս ։ Անոնց վրայօքը անխրատ և յանդուգն դատաստան ընողներու դիմաց զգուշութեամբ նայէ որ խօսիս . այնպիսի մարդիկ ամէն առատ ենթադրութիւն՝ իրենց ապականեալ սրտին համեմատ կը չափեն ։ Լաւծնին ծուռումուռ կերպով ուրիշի ական-

ձը լեցընելով՝ ամենապարզ խօսքե-
րէն ալ, ամենէն անմեղ գործքերէն
ալ չար իմաստ մը կը հանեն :
Կնոջ մը համբաւը անարատ պահե-
լու համար ամենայն հոգ ու ջանք
հարկաւոր է . անոր ամենէն յարգի
բանը այս համբաւն է՝ համեստու-
թեան հետ անխզելի կապելով : Ով
որ կնոջ մը այս համբաւը չհոգար
պահելու, ով որ կը հաճի վատասու-
թեամբ որ կասկածին ուրիշները
կնկան մը վրայ թէ ակարացած է ի-
րեն գիմացը, անպիտան մարդ մ'է
այնպիսին, ու արժանի ամեն ընկեր
ընկերութենէ մերժուելու :

## ԳԼՈՒԽ ԻԳ.

### Ամուսնութիւն :

Թէ որ սրտիդ ընտրութիւնը և վայ-
ելչութիւնը համոզեն զքեզ որ ա-
մուսնանաս, առջը մտքով մտածե-
ցիր Սեղանոյն . հաստատուն մտած-
մամբ երջանիկ ընելու զանիկայ՝ որ
կենացը հոգը քեզի կը վստահի .

զանիկայ՝ որ իր հարցը անուանը կը Թողու՝ քունկը առնելու համար. զանիկայ՝ որ մինչև ան ատեն ունեցած սիրելիներէն վեր սեպեր է զքեզ, և կը յուսայ քեզմով կեանք տալու նոր բանաւոր արարածոց որ զԱստուած վայելելու համար պիտի ըլլան ։

Ի՜նչ խեղճ փորձ մըն է մարդկային անհաստատութեան ։ Ամուսնութեանց մեծ մասը կը կապուին սիրով ու վսեմ խորհուրդներով, բոլորովին սրտիւ կը հաստատուին մինչև ցմահ օրհնութեամբ լի ընելու զանիկայ. բայց երկու տարի վերջը, երբեմն նաև քանի մը ամսէն՝ այս միացեալ ամուսինք կը սկսին իրար չսիրել, նեղութեամբ մէկզմէկ կը կրեն ու կը մահացընեն մէկզմէկ, յանդիմանութիւններով ու իրարու հետ քաղցրութեամբ վարուելու փոյթ չընելով ։

Ինչէ՞ն կը հետևի ։ Ամէն բանէ առաջ՝ երկու ամուսնացելոց պակուսելէն առաջ զիրար աղէկ չճանչնալէն ։ Զգոյշ եղիր ընտրութեանդ

մէջ, սիրելույդ բարի հանգամանք-
ներուն վրայ ապահովացիր առա-
ջուց, ապա թէ ոչ բանդ դէշ է։
Երկրորդ՝ զիրար չսիրելը՝ առաջ
կու գայ անհաստատութեան փոր-
ձութեանց զիջանելու վատութե-
նէն. ամէն օր ինքիր մտքէն այս
խօսքս չանցընելէն. “ Ըրած առա-
ջադրութիւնս պարապ մ'էր, զորն
որ հաստատութեամբ կ'ուզեմ կա-
տարել”։

Գիտցիր որ այս առթիս մէջ ալ,
կենաց ուրիշ պարագայից պէս,
դէպ 'ի չար փոխուիլը շատ դիւրին
է. գիտցիր որ զմարդ արհամարհե-
լի ընողը՝ զօրաւոր կամք չունե-
նալն է. գիտցիր որ մարդկային ըն-
կերութիւնը վատանուն ու թշուառ
ընողը՝ հաստատուն ընաւորութիւն
չունենալն է։

Այս պայմանաւ միայն ամուս-
նութիւն մը կրնայ երջանիկ ըլ-
լալ. երկու ամուսնացեալքն ալ
իրենց առաջին պարտքը պէտք է
այս առաջադրութիւնս ընեն.
“ Կ'ուզեմ սիրել ու պատուել միշտ

այն սիրտը՝ որուն իշխել տուի վրաս ,,:

Թէ որ ընտրութիւնը աղէկ ե-ղած, եթէ երկու սրտից մէկը ա-ռաջուց աւրուած չէր՝ չկրնար ըլ-լալ որ վերջը աւրուի ու անհաւա-տարիմ ըլլայ, երբոր միւսը ամենայն մտադրութիւն ու սէր ցուցընէ ա-նոր վրայ:

Ոչ երբեք մարդ մը տեսնուած է՝ որ իր ամուսնոյն դիմաց անար-ժան բռնութեամբ մը, կամ գոնէ անհոգութեան և կամ որ և իցէ ան-տեղ յանցաւորութիւն մը չունե-նայ, ու անիկայ՝ մէյ մը որ սիրած է զէրիկը՝ դադրի սիրելէն:

Կանանց սիրտը բնութեամբ քաղ-ցր է ու երախտագէտ, և պատ-րաստ է գերագոյն սիրով կապուե-լու ան մարդուն հետ՝ որ հաս-տատուն է զինքը սիրելու և իրեն հաճելի ըլլալու: Բայց սաստիկ զգայուն ըլլալովը՝ դիւրութեամբ ալ երկանը անհաճոյ կերպին ու ամէն տեսակ նուաստացուցիչ պա-կասութեանցը վրայ կը նեղանայ:

Այս նեղանալը կրնայ զինքը անյաղթելի հակակրութեան և անոր հետեւանք ամենայն տեսակ պատրմունքներու մէջ ձգել. Թշուառ կնիկը իրաւցընէ մեծապէս յանցաւոր կ՚ըլլայ, անատենը բայց անոր յանցանացը պատճառը՝ 'ի հարկէ էրիկը պէտք է սեպուի:

Անընդհատ ըլլայ մտացդ մէջ այս համոզեցուցիչ խօսքս.

— Ոչ ոք կին՝ որ իր պսակման օրը բարեսիրտ էր, իր բարելաւութիւնը կը կորսնցընէ էրկան մը ընկերութեամբը՝ որն որ կը շարունակէ իրաւունք ունենալու իր սիրոյն:

Ամուսնոյ մը սիրոյն հաստատապէս իրաւունք ունենալու համար՝ պէտք է անոր աչքին դիմաց ինքզինքը յարգը չպակսեցընել. պէտք է որ ամուսնական ընտանութիւնը չպակսեցընէ էրկանէն՝ իր ամուսինը Սեղանին դիմաց տանելէն առաջ անոր ցուցըցած յարգութիւնը ու քաղաքավարութիւնը. պէտք է որ անոր դիմաց ոչ անմաքրութեամբ դերել ըլլայ ու անկարգ՝ զանփկայ ուղղելու, և

ոչ ալ բռնաւոր իշխանութիւն մը ցըցընէ ու խստութեամբ ուղղէ զանիկայ․ պէտք է որ անիկայ համարմունք ունենայ իր երկանը զգօնութեանը և ուղղամտութեանը վրայ․ պէտք է որ՝ կարենայ անիկայ պարծիլ իր երկանը կենակից ու անկէ կախմունք ունենալուն վրայ․ պէտք է որ՝ անոր իր երկանէն կախմունք ունենալը՝ երկանը գոռոզութենէն բռնադատուած չըլլայ, հապա յառաջ եկեալ 'ի սիրոյ ու երկանը և ինքնիր Ճշմարտ արժանապատուութեանը զգացմունքէն ։

Չըլլայ թէ կնոջ մը աղէկ չկրցած ընտրութեանդ և անոր ունեցած գերազանց առաքինութեանցը վրայ վստահացեալ, անհարկաւոր սեպես քու կողմանէդ՝ անոր անընդհատ մտադրութիւն ցըցընելը ու անոր սիրելի ըլլալու ջանքը․ մէ ըսեր․ " Անիկայ այնչափ կատա-
,, րեալ է՝ որ իմ ամէն պակասու-
,, թեանցս կը ներէ․ ինքզինքս ի-
,, րեն սիրելի ընելու կարօտու-
,, թիւն չկայ, ինքը միշտ ու հա-
,, ստատապէս կը սիրէ զիս ,, ։

Ի՞նչպէս. իրեն անչափ բարերարութեանցը համար անհոգ պիտի ըլլաս իրեն հաճելի ըլլալու. մանաւանդ թէ ազնիւ սիրտ ունենալուն համար՝ անհոգութիւնը, ցածութիւնը և անշնորհքութիւնը զինքը աւելի կը վշտացընեն ու կը նեղացընեն։ Որչափ ազնիւ է իր կերպերը ու զգացմունքը՝ այնչափ հարկաւոր է որ դուն ալ անոր նման գտնուիս։ Թէ որ զքեզ այնպէս չգտնայ, թէ որ տեսնայ զքեզ՝ որ սիրահարի մը պատրիչ քաղցրութենէն՝ դէշ երկան մը զզուելի անհոգութեան դարկած, հակառակ քու անարժանութեանդ՝ առաքինութեան համար միայն երկայն ատեն զքեզ պիտի բռնադատուի սիրել. բայց բռնութիւնը անօգուտ է։ Պիտի ներէ քեզի, բայց ալ պիտի չսիրէ զքեզ, ու թշուառ պիտի ըլլայ։ Վա՜յ, թէ որ ան ատենը իր առաքինութիւնը մէկդի դնէ, և ուրիշ մարդու մը հետ սիրտը կապուի։ Իր սիրտը քեզմէ ըստ արժանւոյն յարգուած ու ա-

զէնք պաշտպանուած չըլլալով կրնայ յանցաւոր ախտի մը զոհ ըլլալ, ախտի մը՝ որ աղետալի է իր անձին, քու՝ և քու որդւոցդ խաղաղութեանը։

Շատ ամուսնացեալք այս վիճակիս մէջ կը գտնուին. և իրենց ամուսինը՝ զոր կ'անիծեն, առաքինի էին։ Խեղճները փոխուեցան, վասն զի չէին սիրուած։

Կնոջ մը՝ Ամուսնոյ սրբազան անունը տալէդ վերջը, ինքզինքդ անոր աղէկութեանը համար պիտի զոհես. ինչպէս ան ալ ինքզինքը քեզի համար. բայց քու պարտքդ անկէ մեծ է, վասն զի անիկայ տըկար արարած մ'է. և դու զօրաւոր ըլլալովդ աւելի պարտականութիւն ունիս անոր բարի օրինակ տալու և օգնելու։

# ԳԼՈՒԽ ԻԴ.

Հայրական սէր։ — Տղոց վրայ սէր։

Թէ որ զաւկըներ ունենաս, քու պարտքդ պիտի ըլլայ զանոնք խելք ընտիր քաղաքացիներ հայրենեացդ ընծայել, մանաւանդ թէ Աստուծոյ ալ իրեն արժանի աղնիւ հոգիներ ընծայել։ Գերազա՛նց պարտք։ Ով որ աս պարտքը վրան կ'առնէ ու չի կատարեր՝ հայրենեաց և Աստուծոյ մեծ թշնամին է։

Հարկ չէ մէկիկ մէկիկ համրել մէկ հօր մը պէտք եղած առաքինութիւնները. դուն անոնք ամէնն ալ կ'ունենաս՝ թէ որ լաւ որդի ու լաւ ամուսին եղած ըլլաս։ Անոնք որ գէշ հայր են՝ ամէնքն ալ ապերախտ որդիք ու վատ ամուսինք եղած են։

Բայց որդւոց տէր ըլլալէդ ալ առաջ՝ կամ թէ ըլլալու միտք չունենաս ալ, ազնուացուր քու սիրադ հայրական սիրոյն անոյշ զգացմուն-

քովը ։ Ամէն մարդ ալ պիտի ունենայ աս զգացմունքը՝ ամէն տղոց և ամէն պատանեաց վրայ դարձընելով ։

Մեծ սիրով նայէ այն մարդկային ընկերութեան նոր մասին վրայ, մեծ համարմամբ մը նայէ ։

Ով որ կ'արհամարհէ կամ անիրաւ ատեղը տղոց սիրոյը կը ցուցընէ, անպիտան մարդ չէ ալ նէ՝ անպիտան կ'ըլլայ ։ Մէկն որ սաստիկ փոյթ չունենար տղու մը անմեղութենէն պատկառելու, անոր չարութիւն չսորվեցընելու, արթուն կենալու որ ուրիշները չարութիւն չսորվեցընեն, ջանալու որ միայն առաքինութեան սիրովը վառուի անիկայ, կրնայ պատճառ ըլլալ որ այն տղան հրէշ մը դառնայ ։ Բայց ինչո՞ւ այսպիսի անզօր խօսքեր բանեցընեմ ու թողում այն ահաւոր ու ամենասուրբ խօսքերն որ ըսաւ Փրրկիչն մեր, տղոց երկրպագելի բարեկամը ․ — " Ով որ այսպիսի տղայ
„ մը իմ անունովս ընդունի, ըսաւ,
„ զիս կ'ընդունի ․ բայց ով որ աս

„ ինծի հաւատացող պզտիկներէն մէկ
„ կուն գայթակղութեան պատճառ
„ ըլլայ , լաւ էր այնպիսւոյն որ մը-
„ ղէն ջաղացքի քար մը կապէին ու
„ ծովը ձգէին „ ։

Ասոնք որ քեզմէ քանի մը տարի պզտիկ են , որոնք որ այն պատճառաւ քու օրինակիդ ու խօսքիդ կրնան հետևիլ, դուն զիրենք քու զաւակացդ տեղը սէպէ . հետերնին այնպիսի ներողամտութեամբ ու միանգամայն անաչառութեամբ վարուէ՝ որով կրնաս չարէն զիրենք հեռացընել ու 'ի բարին յորդորել ։

Տղաք բնութեամբ ինչ որ տեսնեն՝ ան կ'ընեն . Թէ որ տղու մը չորս դին գտնուող չափահասները բարեպաշտ , ծանրակաց , բարեսիրտ են , տղան ետևէ կ'իյնայ անանկ ըլլալու , և կ'ըլլայ ։ Թէ որ չափահասները Հաւատոյ բաներուն պաղ , ցած , ու չարասիրտ են , տղան ալ անոնց պէս անպիտան մարդ մը կ'ըլլայ ։

Նաև այն տղոց ու պատանեաց հետ ալ աղէկ վարուէ՝ որ շատ ան-

գամ՝ չես տեսներ, ու թերեւս կենացդ մէջ մէկ անգամ մը միայն առիթ պիտի ունենաս հետերնին խօսելու. Թէ որ տեղը գայ՝ առաքինութիւն սորվեցընող խօսք մը ըսէ իրենց։ Այն քու խօսքդ, այն համեստ նայուածքդ՝ կրնայ զիրենք ցած մտածութենէ մը հանել, կրնայ սրտերնին վառել որ լաւ մարդկանց համարմանը արժանի ըլլալու աշխատին։

Թէ որ պատանի մը, որուն վրայ յոյս կայ երևելի մարդ ըլլալու, քու վրադ դնէ իր վստահութիւնը, մտերիմ բարեկամ եղիր իրեն; ուղիղ և խելացի խրատներով օգնէ իրեն. ամենևին մի շողոքորթեր զինքը, գովելի գործքերը գովէ, բայց անվայելչները սաստիկ պարսաւներով վար զարկ։

Թէ որ պատանի մը տեսնես որ մոլութեան ետևէ է, թէպէտ և հետը մտերիմ ընտանութիւն չունենաս՝ տեղը եկած ատենը մի քաշուիր ձեռքդ երկընցընելու և զինքը ազատելու։ Երբեմն այն ազատ

որ չար ճամբան բռներ կ'երթայ՝ մէկ կանչելու մը մէկ ակնարկութեան մը միայն կը կարօտի որ ամըչնայ ու դառնայ ուղիղ ճամբան մտնէ։

Արդեօք քու զաւակացդ ինչ կրթութիւն պիտի տաս. — աս բանս չես կրնար հասկընալ՝ ինչուան որ աղէկը դուն չունենաս։ Ունեցիր, որ կարենաս նաեւ տալ։

# ԳԼՈՒԽ ԻԵ.

## Հարստութիւն։

Հաւատքն ալ փիլիսոփայութիւնն ալ կը գովեն աղքատութիւնը՝ երբ որ առաքինական է, և շատ աւելի վեր կը դնեն այնպիսի աղքատութիւնը քան թէ հարստութեան անհանգարտ սէրը։ Եւ սակայն ասոր ալ կը հաւանին թէ մարդս կրնայ թէ հարուստ ըլլալ և թէ այնպիսի պատուական աղքատներուն հաւասար աղէկութիւն ունենալ։

Այս բանիս համար ուրիշ բանի կարօտ չէ այնպիսին՝ բայց եթէ ամօր, որ իր հարստութեանը գերի չըլլայ. ստակը գէշի բանեցընելու համար ոչ ժողվէ և ոչ պահէ, այլ մանաւանդ աս միայն ուզէ որ ստակը իրեն նման մարդկանց օգուտ ընելու բանեցընէ ։

Մարդուս ամէն պատուաւոր միջակներն ալ օրհնած են, ուստի նաև հարստութիւնն ալ. — բաւական է որ հարուստները իրենց յաջողութիւնը ուրիշ շատ մարդկանց բարիք ընելու գործածեն. բաւական է որ հանգստութիւնն ու ճոխութիւնը ծուլութեան ու հըպարտութեան պատճառ չըլլայ իրենց ։

Դուն՝ հաւանական է որ աս միջակին մէջ մնաս՝ որուն մէջ որ ծներ ես, թէ մեծ հարստութենէ հեռու և թէ աղքատութենէ ։ Նայէ որ ոչ երբէք տեղիք գտնէ քու վրադ այն ցած ատելութիւնն, որ շատ անգամ հարուստ չեղողներուն ու աղքատներուն սիրտը կը կրծէ հա-

րուստներուն դէմ ։ Ամէնկայ այնպիսի առնելութիւն մըն է որ արդարաբար փիլիսոփայական լեզուին ծանրութիւնը կ՚առնէ . տաք տաք բացագանչութիւններ կ՚ընէ զեղխութեան դէմ, այլ և այլ վիճակներուն իրարու խիստ անհաւասար ըլլալուն անիրաւութեանը դէմ, հարուստ մեծամեծներուն գոռոզութեանը դէմ . և սաստիկ փափաք մը կը ցուցնէ (ըստ երևութին վեհանձնական փափաք) որ ամէնքը հաւասար ըլլային, և մարդկանց այնչափ խեղճութիւններուն թեթևութիւն մը ըլլար ։ Աս բաներուս ամէնին մէկն ալ զքեզ չխաբէ, թէպէտ և յանկարծ նոյն բանը քանի մը անուանի մարդկանց բերնէն ալ լսես, և հարիւրաւոր ճարտասան իմաստակներու գրուածքներուն մէջ կարդաս, որ հասարակ ժողովուրդը շողոքորթելով անոր գովեստները գնելու կ՚աշխատին ։ Այնպիսի բարկութեանց մէջ աւելի նախանձ՝ ագահութիւն ու զըրպարտութիւն կայ՝ քան թէ արդարութեան սէր ։

Բաղդի անհաւատարմութիւններուն ճար չկայ. և անանցմէ չարիք ալ կ'ելլէ՝ բարիք ալ: Այն մարդն որ այնչափ անէծքներ կու տայ հարուստին, ձեռքէն գար նէ սիրով անոր տեղը կ'անցնէր. ուրեմն Թող հարստութեան մէջ գտնուողն ալ իր տեղը հաստատ կենայ: Խիստ քիչ հարուստ կայ որ ունեցած ստակը չբանեցընէ. և ան բանեցընելովը՝ ամէնքն ալ հազարումէկ կերպով, աւելի կամ պակաս արժանաւորութեամբ, երբեմն ալ առանց արժանաւորութեան, հասարակաց բարւոյն գործակից կ'ըլլան: Հոգի կու տան վաճառականութեան, արհեստակաց կրթութեան, արուեստից մեկմէկէ աւելի ծաղկելուն, աղքատութեան ձեռքէն ճարտարութեամբ փախչելու ուզողին անհամար յոյսերուն:

Հարուստ ըսելէն ետքը, դատարկ՝ մեղկ՝ անօգուտ մարդիկ միայն հասկընալը, անխելք դիւզաբանութիւն է: Թէ որ ոսկին ոմանց ծուլութեան պատճառ կ'ըլլայ նէ, ուրիշ-

Ներքուն ալ այլ և այլ բարեգործու-
թեանց յորդոր կ՚ըլլայ ։ Մէկ ծաղ-
կած քաղաք մը չկայ աշխարհիս ե-
րեսն որ մէջը հարուստները հասա-
րակաց օգտին համար չշինեն հի-
մնած և տուած երթալուն պատ-
ճառ չըլլան. տեղ մը չկայ որ մէջը
կամ ընկերութիւններով և կամ
շատ շատ՝ աղքատներուն օգնու-
թիւն ընողներ չի գտնուին ։

Ուրեմն հարուստներուն վրայ ա-
ռանց բարկութեան և առանց նա-
խանձու նայէ, ու ռամիկ մարդ-
կանց ըրած զրպարտութիւնները
բերանդ մի առներ ։ Նայէ որ ոչ
արհամարհես զանոնք, և ոչ վատ
ըլլաս առջևնին, ինչպէս որ չես ու-
զեր որ քեզմէ քէչ հարուստ եղողը
արհամարհէ կամ վատ ըլլայ քու
առջևդ ։

Բաղդին քեզի տուածը նայէ որ
խելացի խնայութեամբ գործա-
ծես. Նոյնպէս փախիր թէ՛ ագա-
հութենէ՝ որ մարդուս սիրտը ան-
գութ կ՚ընէ ու խելքը կը պակսեց-
ցնէ, և թէ շռայլութենէ՝ որ ա-

մեթալի հնարքներուն ձեռք զար-նել կու տայ ։

Հարստութիւնը աւելցնելու աշ-խատելը օրինաւոր բան է, բայց ա-ռանց անկուշտ ագահութեան, ա-ռանց չափազանց անհանգստու-թեան, առանց մոռնալու թէ անկէ չէ կախուած մարդուս ճշմարիտ պատիւն ու ճշմարիտ երջանկու-թիւնը, հապա Աստուծոյ և մարդ-կանց առջև ազնիւ սիրտ ունենա-լէն ։

Թէ որ յաջողութիւնդ աւելնայ, թող աստիճանաբար բարեգործու-թիւնդ ալ աւելնայ ։ Մէկը ամէն առաքինութեանց հետ մէկտեղ կըր-նայ հարստութիւն ալ ունենալ. բայց հարուստ ու ամբարտաւան ըլլալը մեծ անզգամութիւն է ։ Շատ ունեցողը շատ պիտի տայ. աս մէկ սրբազան պարտք մըն է որ չկատա-րել չըլլար ։

Մուրացկանին չէ մի ըսեր. բայց քու ողորմութիւնդ ան միայն չըլ-լայ. մեծ ու խելացի կերպով ողոր-մութիւն տալը ան է որ մարդ աղ-

քահանաներուն մուրացկանութիւնն է ա-
ւելի վայելուչ կերպով ապրելու ճար մը գտնէ, որ է այլ և այլ արուեստաւորներու (թէ՛ հասարակ ըլլայ արուեստնին և թէ բարակ) աշխատութիւն ու ապրուստ տալ։

Մանաւանդ երբեմն որ անակնկալ դիպուածներով կրնան քու նախնեացդ քեզի թողած ժառանգութիւնը կորսնցընել ու թշուառութեան մէջ իյնալ։ Այսպիսի կործանմունքներ խիստ շատ պատահած են մեր աչքին առջևը. մէկ հարուստ մը չկայ որ կարենայ ըսել՝ “Ոչ աղքատանքի մէջ պիտի մտնեմ և ոչ խեղճութեան մէջ„։

Վայելէ հարստութիւնդ այն վեհանձնական ազատութեամբ որ Եկեղեցւոյ իմաստասէրները Աւետարանին հետևելով կ՚անուանեն Աղքատութիւն հոգւոյ։

Վոլթէռ, ծաղրածութիւնը բըռնած ատեններէն մէկուն մէջ անանկ ձևացուց թէ կարծէ որ Աւետարանին պահպանած հոգւոյ աղքատութիւնը յիմարութիւն մըն է։ Ուր

ընդհականակն՝ առաքինութիւն մըն է ասիկայ՝ որով մարդ հարստութեան մէջ ալ խոնարհամիտ կ'ըլլայ, աղքատութեան թշնամի չըլլար, թէ որ աղքատութեան մէջ ալ իյնայ՝ անոր դիմանալու անկարող չըլլար, ուրիշներուն վրայ որ տեսնէ՝ մեծարելու անկարող չըլլար: Առաքինութիւն մըն է որ յիմարութենէ շատ հեռու է. առաքինութիւն մը որ միայն վսեմ մտքէ ու իմաստութենէ կրնայ առաջ գալ:

“ Կ'ուզեմ հոգիդ կրթել, կ'ըսէ
,, Սենեկա, կամ աղքատ ապրէ,
,, կամ աղքատի պէս ապրէ ,,:

Թէ որ յանկարծ խեղճութեան մէջ իյնաս, մի յուսահատիր: Աշխատէ որ ապրիս, ու մի ամչնար: Կարօտ մարդն ալ իրեն կարօտութեանը հաւնողին պէս պատուաւոր մարդ կրնայ ըլլալ: Բայց քու քաջութիւնդ այն պիտի ըլլայ ան ատենն որ հարստութեան սովորութիւններէն սիրով կարենաս ետ կենալ. Նայիս որ չըլլայ թէ աղքատ

հպարտ ձանձրացուելով, ծառը ու խղճալի ըլլաս ամենուն, և արդարին ամենավայելուչ առաքինութիւնները չուզես ունենալ, որ են աղնուական խոնարհամտութիւն, ամենաձիշդ խնայութիւն, աշխատանքին մէջ անյաղթելի համբերութիւն, ու ձախորդութեան մէջ ալ սիրելի զուարթամտութիւն :

## ԳԼՈՒԽ ԻԶ.

Դժբաղդներու վրայ գութ :
Բարերարութիւն :

Ամենայն մարդկային համեստ վիճակները պատուական են. պատուական են ուրեմն աղքատներն ալ. — միայն թէ իրենց թշուառութիւնը իրենք լաւցնելու բանեցնեն, միայն թէ միտքերնին չգնեն թէ նեղութիւն քաշելը իրաւունք կու տայ իրենց մոլութեան ու չարամտութեան ետևէն ըլլալու :

Եւ սակայն անոնց վրայ դատաստան ըրած ատենդ խիստ անաչառ մի՛ ըլլար ։ Խղճմտանս նաև այն աղքատներուն վրայ որ երբեմն անհամբերութիւններին ու կատաղութիւններին շատկեկ կ'ըլլայ ։ Մտածէ որ շատ դժուար բան է նեղութիւն քաշել աս կամ ան փողոցին՝ աս կամ ան տնակին մէջ, ու քանի մը քայլ անդին հագուած կապուած ու կերած խմած մարդիկ տեսնել ։ Ներէ իրեն՝ թէ որ խեղճը նախանձու աչքով նայի վրադ, նայէ որ կարօտութեանը համար՝ վասն զի մարդ է ։

Ո՛ր և իցէ դժբաղդութիւն քաշողներուն վրայ գութ ունեցիր, թէպէտ և վերջին կարօտութեան մէջ չըլլան, թէպէտ և քեզմէ օգնութիւն մը չխնդրեն ։

Ո՛վ որ առանց դժուարութեան ու ձեռքին աշխատանքովը կ'ապրի, ու քեզմէ վար աստիճանի մէջ է, վրան սրտացաւութեամբ ու անուշ կարեկցութեամբ նայէ ։ Մի՛ հասկըցըներ իրեն դոռոզ կերպերով թէ

քու վիճակդ իր վիճակէն տարբեր է ։ Չըլլայ թէ դառն խօսքերով սիրտը կոտրես, թէպէտ և իր մէկ կոպտութեանը կամ ուրիշ պակասութեանը համար անհաճոյ երևնայ քեզի ։

Խեղճ մարդուն համար ամենամեծ մխիթարութիւն է տեսնելն որ իրմէ վեր մարդիկ հետը սիրով ու անուշութեամբ կը վարուին․ սիրտը երախտագիտութեամբ կը լեցուի, և ան ատենը կը հասկընայ թէ հարուստը ինչո՛ւ համար հարուստ է․ ուստի բաներուն յաջող երթալուն ալ կը ներէ, վասն զի կը տեսնէ որ արժանի է յաջողութեան ։

Արհամարհոտ ու կոշտ տէրերը ամէնէն ալ ատելի են, թէպէտ և աղէկ ալ վճարքը տան իրենց ծառաներուն ։

Քեզմէ վար եղողներուն թէ որ ատելի ըլլաս՝ մեծ պակասութիւն է քեզի․ մէյմը՝ որ ան ատենը չարագործը դուն կ՚ըլլաս․ երկրորդ՝ որ անոնց նեղութիւնները թեթև-

ցընելու տեղը կ՚աւելցընես . երրորդ՝ որ կը վարժեցընես զերենք անհաւատարմութեամբ ծառայելու քեզի , ուրիշի հպատակիլը ատելու , իրենցմէ վեր եղողներուն ամէնն ալ անիծելու : Եւ որովհետև իրաւունք է որ ամէն մարդ ալ ծրչափ որ կրնայ երջանիկ ըլլայ , ով որ վարի աստիճանի մարդ չէ՝ պիտի ջանայ որ իրմէ վարինները իրենց վիճակը անտանելի չհամարին , այլ մանաւանդ սիրեն , տեսնելով որ հարուստին առջևը արհամարհելի չէ , հապա՛ նաև վայելուչ կերպով մխիթարութիւններ ունի անկէ :

Ամէն տեսակ օգնութիւն ամենայն սիրով ըրէ կարօտ եղողին , տրկով ու պաշտպանութեամբ՝ թէ որ ձեռքդ կը հասնի , խորհուրդ տալով՝ յարմար առիթներու մէջ , անուշ կերպերով ու բարի օրինակով՝ ամէն ատեն :

Բայց մանաւանդ երբոր կը տեսնես արգիլնաւոր մարդը երեսի վրայ ձգուած , բոլոր ուժովդ աշ-

խօսուէ որ զէնքը կանգնեն․ կամ թէ որ չես կրնար՝ ջանաս որ դէթ մխի-թարես ու պատուես զէնքը։

Դժբաղդութեան մէջ ընկած լաւ մարդուն վրայ համարում ցուցը-նելէն ամչնալը՝ ետքի աստիճանի վատութիւն է։ Կարծածէդ ալ ա-ւելի շատ է աս վատութիւնը․ անոր համար աւելի ալ արթուն կեցիր որ ոչ երբէք անոր մօտենաս։

Մէկն որ դժբաղդութեան մէջ իյնայ, շատ մարդիկ յանցանքը իր վրայ կը ձգեն, ու մօտերնին կը գը-նեն թէ անոր թշնամիները իրա-ւունք ունին զէնքը վար զարնելու, չարչարելու։ Թէ որ անոնք զրպար-տութիւն մը ընեն՝ իրենք զիրենք արդարացընելու և անոր անունը աւրելու համար, այն զրպարտու-թիւնը թէպէտև ամենևին հաւա-նականութիւն ալ չունենայ՝ սովո-րաբար ամէնքը կը հաւատան ու անգը-թութեամբ կը պատմեն ու կը պատ-մեն։ Քանի մը հոգի թէ որ աշխա-տին ալ այն զրպարտութիւնը սուտ հանելու, մտիկ ընող չըլլար։ Կար-

ծեր թէ մարդկանց մեծ մասը ինքզինքը երջանիկ կը սեպէ՝ երբոր կրնայ չարախօսութեան հաւատալ ։

Զգուշելի ըլլայ քեզի այնպիսի անպիտան ախորժակը ։ Երբոր ամբաստանութիւն կը լսես, անհոգ մի ըլլար ջատագովութիւնն ալ լսելու. և թէ որ ջատագովութիւն ալ չըլսուի, գոնէ քեզմէ այնչափ վեհանձնութիւն ըլլէ որ քանի մը ջատագովութեան պատճառ գըտնես ։ Ինչուան որ յանցանք մը յայտնի չըլլայ՝ մի հաւատար, բայց սա ալ գիտցիր որ սրտին մէջ առաքինութիւն ունեցող մարդը շատ յանցանքներ յայտնի կը համարի որ յայտնի չեն ։ Թէ որ կ՚ուզես արդար ըլլալ՝ ոխ մի պահեր. ոխակալաց արդարութիւնը փարիսեցւոց կատաղութիւնն է ։

Մէկուն գլխուն փորձանք մը որ հանդիպի, թէպէտև քեզի թշնամի եղած ըլլայ, թէպէտև քու հայրենիքդ քանդող մը եղած ըլլայ, անոր խեղճութեանը վրայ գթող ուրախութեամբ մը նայիլը վա-

տութիւն է ։ Թէ որ հարկը բերէ՝ խօսէ անոր ըրած պակասութեանցը վրայ, բայց այնչափ սաստկութեամբ մի՛ խօսիր՝ որչափ որ կըրնայիր անոր յաջողութեանը ատեն խօսիլ. մանաւանդ թէ երկիւղածութեամբ ուշ դիր որ պակասութիւնները չմեծցընես, չմոռնաս այն աղէկութիւններն ալ որ այն մարդուն վրայ ալ փայլած են ։

Միշտ գեղեցիկ է դժբաղդներու, և ինչուան չարագործներու վրայ ալ խղճալը ։ Օրէնքը կընայ իրաւունք ունենալ այնպիսիները դատապարտելու. մարդս ոչ երբէք իրաւունք ունի անոնց քաշած նեղութեանը վրայ ուրախանալու, և ոչ պէտք եղածէն աւելի զիրենք յանցաւոր ու պատժապարտելի երևցընելու ։

Գթածութիւնը երբոր քեզի ըննութիւն դարձընես՝ ապերախտ մարդկանց հետ ալ երբեմն գթութեամբ կը վարուիս ։ Անկէց մի՛ հեռացըներ նեղսրտութեամբ թէ ամէնքն ալ ապերախտ են. գթու-

թիւնը ձեռքէ մը ձգեր ։ Շատ ապերախտներու մէջ մէկ երախտագէտ մըն ալ կը գտնուի որ քու բարերարութեանցդ արժանի ըլլայ ։

Այս բարերարութիւններդ իրեն չէին համներ՝ թէ որ շատի ըրած ըլլայիր ։ Այն մէկուն օրհնենքները մէկալ տասնէն տեսած ապերախտութեանդ տեղը կը բռնեն ։

Ո՞ւր թողունք որ մէկ երախտագէտ մըն ալ չգտնես նէ՝ քու բարերարութիւնդ քեզի վարձք է ։ Ողորմած ըլլալուն պէս , ուրիշներուն դժբաղդութիւնը թեթեւցնելուն պէս քաղցր բան չկայ ։ Ասիկայ ուրիշներէն օգնութիւն գտնելէն շատ աւելի քաղցր է . վասն զի տալուն մէջ ստորնութիւն չկայ , իսկ առնելուն մէջ՝ խիստ շատ ։

Բարեգործութիւն մը ընելու ատենդ շատ զգուշաւոր եղիր ամէն տանն , բայց աւելի՝ երբոր դիմացինդ պատկառելի մարդ է , քաշուող ու պատուաւոր կին է , աղքատութեան անողորմ ճամբուն

ծուկ ընելն ալ կարելի չէ ։ Բարեգործական ընկերութիւնները սիրէ, ու թէ որ կրնաս՝ ծաղկեցուր. թմրած են նէ՝ արթնցուր, աւրուած են նէ՝ շտկէ ։ Սիրտդ թող չկոտրի այն ծաղրածութիւններէն որ ագահ ու անշահ մարդիկ կ՚ընեն միշտ այն գործունեայ անձանց վրայ՝ որ մարդկութեան օգտին համար կ՚աշխատին ։

## ԳԼՈՒԽ ԻԷ.

Գիտութեան յարգը ճանչնալ ։

Երբոր քու պաշտօնդ կամ անական զբաղմունքդ թող չեն տար որ առջինին այնքան երկար ժամանակ անցընես գիրք կարդալու՝, զգուշացիր այն խիստ սովորական դարձած սխակասութենէն որով շատը կամ քիչ բան կը սորվին կամ ամենեւին չեն ուզեր սորվիլ. այսինքն այն ամենայն բաներն որ իրենք չեն սորված՝ կ՚արհամարհեն, բան սորվե-

լու եռալէ եղողին վրայ քթերնուն տակէն կը ծիծաղին, ու ազատութիւնը մարդկային ընկերութեան օգտակար բանի մը տեղ կ'ուզեն դնել:

Արհամարհէ դուն սուտ գիտութիւնը, վասն զի գէշ է. բայց յարգէ ճշմարիտ գիտութիւնը, վասն զի միշտ օգտակար է: Յարգէ ճշմարիտ գիտութիւնը՝ թէ ունեցած ըլլաս անիկայ և թէ անոր հասնելու կրցած չըլլաս:

Մանաւանդ թէ բոլոր հոգւովդ եռալէն եղիր որ դուն քեզմէ անդադար յառաջադիմութիւն մը ունենաս, կամ մէկ գիտութեան մը մասնաւոր կերպով եռալէ իյնալով, և կամ դէթ տեսակ տեսակ պիտանի գրքեր կարդալով: Նշանաւոր վիճակի մարդու մը համար աս կերպով միտքը կրթելը հարկաւոր բան է. ոչ միայն անկէց առաջ եկած վայելչական զուարճութեանն ու խելք սորվելու բաներուն համար, հապա վասն զի գիտուն և ուսումնասէր մարդու անուն հանելով

ուելի ազդեցութիւն կ'ունենայ զուրիշները 'ի բարին յորդորելու ։ Նախանձը միշտ պատրաստ է լաւ մարդուն անունը կոտրելու . Թէ որ անիկայ պատճառ մը կամ պատճառանք մը գտնէ զինքը տգէտ կամ տգիտութեան պաշտպան անուանելու , հասարակ ժողովուրդը ան' մարդուն ըրած լաւ բաներն ալ գէշ կը սեպէ , վար կը զարնէ ու կրցածին չափ կ'արգելէ ։

Հաւատոյ , Հայրենեաց , Պատուոյ խնդիրները . այնպիսի քաջ նահատակներ կ'ուզեն , որ նախ առաքինական ջանքով և ետքը գիտութեամբ ու մարդավարութեամբ աղէկ զինուած ըլլան ։ Ա՜յ բարեբարոյ մարդկանց՝ թէ որ չարամիտները կարենան իրաւամբ ըսել անոնց . " Դուք բան չէք սորված , ու սիրելի կերպ չունիք ,, ։

Բայց բան գիտցողի անուն հանելու համար՝ չըլլայ թէ չունեցած տեղեկութիւններուդ ունեցող ձեւանաս ։ Ամենայն խաբէութիւն ցածութիւն է . սանկ է

նաև չգիտցած բանին գիտցող ձևանալը ։ Թող որ խաբեբայ մը չկայ որ քիչ ատենէն դիմակը չբացուի չիյնայ , ու խայտառակութիւնը դուրս չելլէ ։

Թէպէտ գիտութեան վրայ շատ մեծ համարում պիտի ունենանք , բայց պիտի նայինք որ անիկայ կուռքի պէս ալ չպաշտենք ։ Փափաքինք որ մենք ալ ուրիշներն ալ գիտութիւն ունենանք . բայց թէ որ քիչ բան կրցանք սորվիլ՝ մխիթարուինք , ու պարզ սրտով ինչ ըլլալնիս ցուցնենք ։ Շատ բանի տեղեկութիւն ունենալը լաւ բան է , բայց որովհետև ամենէն աւելի հարկաւորը առաքինութիւնն է , աղէկ որ անիկայ տգիտութեան հետ ալ կրնայ միաբանիլ ։

Ուրեմն եթէ դուն շատ բան գիտես , անոր համար տգէտը մի արհամարհեր ։ Գիտութիւնը հարստութեան պէս է . փափաքելի բան է՝ ուրիշներուն աւելի օգուտ ընե-
ւ համար . բայց ով որ զուրկ է
կէց՝ որովհետև կրնայ ընտիր քա-

ղաքացի ըլլալ՝ իրաւունք ունի պատկառելի ըլլալու :

Լուսաւորեալ մտածութիւններ տարածել քիչ կրթութիւն ունեցող մարդկանց մէջ : Բայց ի՞նչ տեսակ մտածութիւններ պիտի ըլլան : Չէ թէ այնպիսի որ անոնցմով դիմացիններդ իմաստակ , վճռատու և չարամիտ կ'ըլլան : Չէ թէ ան չափազանց բացագանչութիւնները որ թատերական խաղերու և չինծու ռամկական պատմութիւններու մէջ համով կ'երևնան . ուր միշտ ամենացած մարդիկը մէյմէկ գիւցազն կը ձևանան , ու մեծամեծ մարդիկը մէյմէկ չարագործ . ուր մարդկային ընկերութեան բոլոր նկարագիրն ալ աւրած է որ զզուելի ըլլայ . ուր առաքինի կօշկակար անիկայ սեպուած է որ իր տիրոջը դէմ կռիւ կ'ընէ . ուր առաքինի տէր ան կը սեպուի՝ որ կօշկակարին աղջիկը իրեն հարս կ'առնէ . ուր ինչուան աւազակներն ալ գովելի մարդիկ կը ձևանան , որպէս զի ով որ զանոնք չգովեր՝ զզուելի երևնայ :

Հասարակ ժողովրդեան մէջն տգէտներուն մէջ տարածուելու լուսաւոր մտածութիւններն անոնք են՝ որ զմարդ մոլորութենէ և խաբէութենէ կը պահեն. անոնք՝ որ առանց գիտուն մարդուն և իրենցմէ աւելի իշխանութիւն ունեցող մարդուն վատ երկրպագութիւն ընել տալու, կը սորվեցընեն իրենց ազնիւ կերպով մը թէ ինչ բան է ակնածութիւնը, բարեսրտութիւնն ու երախտագիտութիւնը. անոնք՝ որ կը հեռացընեն զիրենք անիշխանութեան կամ ռամկավարութեան կատաղի ու անխելք երևակայութիւններէն. անոնք՝ որ կը սորվեցընեն իրենց բարեպաշտական վայելչութեամբ կատարել այն աչքի չզարնող բայց պատուաւոր պաշտօնները որ Աստուծոյ նախախնամութիւնը տուեր է իրենց. անոնք՝ որ կը սորվեցընեն իրենց թէ հարկաւոր են ընկերական անհաւասարութիւնները. Թէպէտ և՝ առաջինի ըլլանք նէ՝ ամէնքնիս ալ հաւասար ենք Աստուծոյ առջևը։

# ԳԼՈՒԽ ԻԸ.

## Մարդավարութիւն ։

Որոնց հետ որ վարուիս՝ ամենուն հետ ալ մարդավար եղիր ։ Մարդավարութեամբ սիրելի կերպեր կը սորվիս, անով սիրել ալ կը սորվիս ։ Ով որ իր վարմունքին մէջ կոշտ, կասկածոտ, արհամարհոտ կերպեր կը բանեցընէ՝ չարասրտութեան կը վարժի ։ Ուստի անքաղաքավարութենէն երկու մեծամեծ վնասներ առաջ կու գան. մէյմը որ անքաղաքավարին բնութիւնը կ՚աւրէ, մէյմ՚ալ որ ընկերոջը սիրտը կը ցաւցընէ կամ բարկութիւնը կը շարժէ ։

Բայց ջանքդ ան միայն չըլլայ որ կերպերուդ մէջ մարդավարութիւն ունենաս. Նայէ որ քու ամէն երեւակայութիւններուդ, ամէն փափաքներուդ, ամէն զգացմունքներուդ մէջ ալ մարդավարութիւն գտնուի ։

Այն մարդն որ հոգ չըներ իրեն խելքը ցած մտածութիւններէ ազատելու, և շատ անգամ տեղիք կու տայ անոնց, խիստ շատ անգամ անոնցմով պարսաւելի գործողութեանց մէջն ալ կ'իյնայ:

Մարդիկ կը տեսնես որ այնչափ ցած աստիճանի ալ չեն՝ ու կոշտ կատակներ կը գործածեն և անամօթ լեզու մը կը բանեցընեն. մի՛ հետևիր անոնց: Քու լեզուիդ մէջ արուեստակեալ զարդարանք չըլլայ, բայց մաքուր ըլլայ ամէն տեսակ ռամկական տգեղութիւններէ, այն անխելք բացագանչութիւններէն՝ որոնցմով անկիրթ մարդիկ իրենց խօսակցութիւնը կը ջանան զարդարել, այն ամենայն ցած ծաղրաբանութիւններէն՝ որոնցմով շատ մարդիկ ուրիշներուն համեստութեանը կը դպչին:

Բայց խօսակցութեանդ գեղեցկութիւն տալը պզտիկուց պիտի սկսիս: Ով որ քսանըհինգ տարեկան ըլլալէն առաջ աս գեղեցկութիւնը չէ ունեցած՝ ետքը չունե-

նար ։ Չէ թէ արուեստակեալ չին-
ծու գեղեցկութիւն, նորէն կ'ը-
սեմ, հապա համեստ ու ազնիւ
խօսակցութիւն, այնպիսի խօսքեր
որ լսողներուն ուրախութիւն, մխի-
թարութիւն, քաղցրութիւն ու ա-
ռաքինութեան սէր պատճառեն ։

Ջանա որ բառերդ ընտիր ու
ձայնդ բարեյարմար ընելով ալ հա-
ճոյական ընես խօսակցութիւնդ ։
Սիրելի կերպով խօսողը մտիկ ընող-
ներուն սիրտը կը վաստըկի. ուստի
երբոր հարկ ըլլայ զիրենք 'ի բարին
յորդորել կամ չարէն հեռացընել,
աւելի ազդեցութիւն կ'ունենայ ա-
նոնց վրայ ։ Մեր պարտքն է որ կա-
տարելագործենք այն ամենայն գոր-
ծիքներն որ Աստուած կու տայ մե-
զի մեր ընկերներուն օգնելու հա-
մար. ուրեմն մտքերնիս ուրիշի հաս-
կըցընելու կերպն ալ պիտի կատա-
րելագործենք ։

Երբոր մէկը չափէ դուրս կրակոտ
կերպով կը խօսի, բան մը կը կար-
դայ, ուրիշի հետ կը տեսնուի,
դիմացը կը կենայ կամ կը նստի,

պատճառը ոչ այնչափ ան է որ լաւ ընելուն կարողութիւն չունի, որչափ ամօթալի ծուլութիւնն է. ինքզինքը օրէ օր լաւցընելու և ուրիշներուն պէտք եղած պատիւը տալու աշխատիլ չուզելն է ։

Բայց երբոր դուն մարդավարութիւնը քեզի պարտք ճանչնաս, և միտքդ բերես որ իրաւցընէ պարտական ենք այնպիսի կերպով չարժիլ որ մեր ներկայութիւնը պատիժ չըլլայ ուրիշի, հապա մանաւանդ ուրախութիւն ու բարիք, ան ատենն ալ ամարդի մարդկանց վրայ մի՛ սրդողիր ։ Մտածէ որ երբեմն ազնիւ գոհարները ցեխոտ կ՚ըլլան ։ Աւելի լաւ կ՚ըլլար որ ցեխ չտեսնուէր վրանին, և սակայն ան դժբաղդութեան մէջ ալ դարձեալ իրենք գոհար են ։

Մեծ մարդավարութիւն է անխոնջ զուարթութեամբ համբերելը այնպիսի մարդկանց, ինչպէս նաև անթիւ անհամար նեղացուցիչ ու անխելք մարդկանց ։ Երբոր առիթ չունիս իրենց օգուտ մը ընելու,

կրնաս քովէդ հեռացընել զիրենք, բայց ոչ երբէք այնպիսի կերպով պիտի հեռացընես որ հասկընան թէ չհաւնեցար իրենց։ Ապա թէ ոչ, կամ ան է որ սրտերնին կը կոտրի, կամ ան է որ քեզի դէմ ատելութիւն կ'ունենան։

## ԳԼՈՒԽ ԻԹ.

### Երախտագիտութիւն։

Թէ որ պարտական ենք ամենուն ալ գութ և սէր ցուցընել ու ամենուն հետ լաւ կերպով վարուիլ, որչափ եւս առաւել այն զգացմունքներն ու վարմունքը պիտի ունենանք անոնց որ մեզի սէր, կարեկցութիւն, ներողամտութիւն ցուցուցեր են։

Մեր ծնողացմէ սկսեալ՝ մէկը չգտնուիր որ գործքով կամ խօսքով մեզի սրտանց աղէկութիւն մը ըրած ըլլայ, և մենք իրեն բարիքը գրեթէ չյիշենք։

Ուրիշներուն վրայ դատաստան ընելու տեղն կրնանք երբեմն անա-չառ ու անզգոյշ ըլլալ՝ տալով ծանր յանցանքի · բայց մէկն որ մե-զի բարիք մը ըրաւ՝ ալ չենք կրնար զանց ընել այն մտադրութիւնները որով պէտք նայինք որ սիրտը չկո-տրենք, ամենեւին զինքը չվշտացը-նենք, անունը կերպով մը չաւ-րենք, այլ մանաւանդ պատրաստ ըլլանք շուտ մը զինքը պաշտպանե-լու եւ մխիթարելու :

Շատը կան որ երբոր իրենց բա-րիք ընողը մեծ բանի տեղ կը դնէ (կամ անանկ կ'երեւայ) իր ըրած ե-րախտիքը, կը սրդողին, աններելի տմարդութիւն կը համարին անոր ըրածը, եւ կ'ուզեն որ այն պատ-ճառաւ ազատ ըլլան երախտագի-տութեան պարտքէն : Շատը կան որ իրենց երախտիք ընդունած ըլ-լալուն վրայ վատութեամբ ամըչ-նալով, շատ վարպետ են ենթա-դրելու թէ բարիք ընողը իր շահուն համար, փառամոլութեան համար, կամ ուրիշ անարժան վախճանի մը

համար ըրեր է. և կարծեն թէ անով իրենց ապերախտութիւնը կ'արդարանայ: Շատը կան որ կարողութիւն ունենան նէ՝ կը պատրաստուին երախտիքը ետ դարձընելու, որպէս զի երախտագիտութեան ծանրութենէն ազատին. ան ըրածնուն պէս՝ կարծեն թէ ալ անպարտ են, ու կը մոռնան երախտագիտութեան այնչափ պարտքերը:

Ապերախտութիւնը արդարացընելու համար գործածուած ամէն հնարքներն ալ փուճ են. ապերախտը վատ մարդ է. և աս վատութեան մէջ չիյնալու համար պէտք է որ երախտագիտութիւնը պակաս չըլլայ, հապա ամենայն կերպով առատ ըլլայ:

Թէ որ բարերարդ կը հպարտանայ քեզի ըրած աղէկութեանը վրայ. թէ որ քեզի հետ ուզած նկատմունքներովդ չվարուիր, թէ որ խիստ յայտնի ալ չերևնար թէ առանց շահասիրութեան ուզեր է քեզի բարիք ընել, զինքը դատա-

պարտելը քեզի չիյնար ։ Վարագոյր մը ձգէ անոր իրաւ կամ կարելի պակասութիւններուն վրայ, ու միայն իրմէ տեսած բարիքդ մտածէ ։ Այն բարիքը միշտ մտածէ, թէպէտ և դու փոխարէն հատուցումն ըրած ըլլաս, և հազար անգամ ալ աւելին հատուցած ըլլաս ։

Կրնայ մարդ երբեմն երախտագէտ ըլլալ՝ ընդունած երախտագիտութիւնը առանց իմացընելու ամենուն . բայց ո՛ր և իցէ ատեն որ խղճմտանքդ ըսէ քեզի թէ իմացընելը հարկաւոր է՝ չըլլայ թէ ցած ամըչկոտութեամբ մը ետ կենաս . խոստովանէ թէ երախտապարտ ես քեզի օգնող ձեռքին ։ Առանց վըկայի շնորհակալութիւն ընելը՝ շատ անգամ ապերախտութիւն է, կ'ըսէ Պլանշառ պատուական բարոյախօսը ։

Միայն ան մարդը բարեսիրտ ըսուելու է որ ամենայն բարեաց համար, ինչուան խիստ պզտիկ բարեաց համար ալ երախտագէտ է ։

Երախտագիտութիւնը հոգի է բարեպաշտութեան, որդիական սիրոյ, մտերմական սիրոյ, նաև սիրոյ մարդկային ընկերութեան՝ որ այնչափ օգուտներու և քաղցրութեանց պատճառ է մեզի։

Երախտագէտ ըլլալով այն ամենայն բարեաց համար որ յԱստուծոյ և 'ի մարդկանէ կ'ընդունինք, աւելի կը զօրանանք աս աշխարհիս նեղութիւններուն սիրով համբերելու, և աւելի դիւրաւ ներողամիտ կ'ըլլանք մեզի նման մարդկանց, ու կ'օգնենք իրենց։

## ԳԼՈՒԽ Լ.

### Խոնարհութիւն, Հեզութիւն, Անյիշաչարութիւն։

Հպարտութիւնն ու բարկութիւնը մարդավարութեան հետ չեն յարմարիր. անոր համար ով որ խոնարհութեան ու հեզութեան չէ վարժած՝ մարդավար չէ։

“ Թէ որ մէկ զգացմունք մը կայ
„ որ անով ուրիշներուն նախա-
„ տինք ընող արհամարհութիւնը
„ կը փճանայ՝ խոնարհութիւնն է:
„ Արհամարհութեան պատճառն
„ ան է՝ որ մարդ ինքզինքը ուրիշ-
„ ներուն հետ կը բաղդատէ ու ա-
„ նոնցմէ վեր կը գնէ. ուրեմն ինչ-
„ պէս կրնայ սա արհամարհանքը
„ արմատ ձգել մէկ սրտի մը մէջ
„ որ սորված է իր խեղճութիւն-
„ ները մտածել ու ողբալ. իր ա-
„ մէն աղէկութեանը տուող՝ զԱս-
„ տուած ճանչնալ, հաւատալ թէ
„ Աստուած զինքը չբռնէ նէ՝ կրը-
„ նայ ամէն տեսակ չարեաց մէջ
„ իյնալ„ կ'ըսէ Մանծոնի իր Բո-
րոյանին ուղղափառ հաւատոյ ընտուած
սքանչելի գրքին մէջ:

Նայէ որ անդադար սանձես
բարկութիւններդ, ապա թէ ոչ՝
դաժան ու հպարտ կ'ըլլաս: Կըր-
նայ գտնուիլ նաև արդարացի բար-
կութիւն, բայց խիստ քիչ դի-
պուածներու մէջ: Ով որ ամէն
անգամ արդարացի կը կարծէ իր

բարկութիւնը, նախանձաւորութեան դիմակով իր չարութիւնը կը ծածկէ։

Այս պակասութիւնը սոսկալի կերպով շատցած է։ Քանի հոգւոյ հետ խօսէ առանձին, կը տեսնես որ անոնցմէ տասնըինը հոգին զատ զատ սրտերնին կը բանան քեզի ու կը պատմեն իրենց իրաւացի նեղսրտութիւնն որ ունին մէկուն մէկալին դէմ։ Ամէնքն ալ կարծես թէ կատղեր են անիրաւութեան դէմ՝ իբր թէ իրենք միայն արդար դատուէին աշխարհիս երեսը։ Իրենց բնակած երկրին պէս անպիտան երկիր չկայ · իրենց ատենին պէս գէշ ատեն ոչ երբէք եղեր է · իրենց չըլլած բարեկարգութիւնները միշտ գէշ են · բարեպաշտութեան ու բարի վարուց վրայ խօսքը իրենց համար միշտ խաբեբայ է · թէ որ հարուստին մէկը ոսկին չի վատներ՝ միշտ ագահ է · թէ որ յանկարծ մէկուն բարիք մը ընեն՝ անիկայ միշտ ապերախտ է։ Վերջապէս ընկերութեան մէ-



զի ամէն անձինքը անիծել՝ բաց 'ի հազիւ մէկ քանի բարեկամներէ՝ ընդհանրապէս անպատմելի զուարճութիւն մը կ'երևնայ ։

Աւելի ալ գէշը մըն է․ այն բարկութիւնը, որ մէյմը հեռաւորաց վրայ կը նետուի՝ մէյմը մերձաւորաց վրայ կը թափուի, սովորաբար հաճոյ կ'երևնայ անոր որ անմիջապէս իրեն դէմ չէ ։ Կատաղի ու մէկը մէկալը խածնող մարդը շատ անգամ վեհանձն մարդ կը սեպուի, այնպէս որ եթէ աշխարհս կառավարէր՝ դիւցազուն մը պիտի ըլլար ։ Անոր ներհակ՝ հեզ մարդը սովորաբար խեղճ ու անարգ մարդ կը սեպուի, իբրև անկարող կամ թըմրած մարդ ։

Խոնարհութիւնն ու հեզութիւնը փառաւոր առաքինութիւններ չեն, բայց դուն անոնցմէ մի՛ բաժնուիր, վասն զի ամէն փառքէ ալ վեր են ։ Բարկութեան ու հպարտութեան խիստ շատ ըլլալը՝ միայն աս կը նշանակէ թէ սէրն ու Ճշմարիտ վեհանձնութիւնը խիստ պակ-

սած են, և թէ ամէնքն ալ փառասիրութիւն մը ունին ուրիշներէն լաւ երեւնալու :

Միտքդ դիր որ խոնարհ ու հեզահոգի ըլլաս, բայց միանգամայն ալ հասկըցուր թէ ոչ անկարող ես և ոչ թմրած : — Ի՞նչ կերպով : Մինթէ երբեմն համբերութիւնդ պիտի հատցընե՞ս ու անզգամին ժանի՞քդ պիտի ցուցընես. միթէ մէկն որ խօսքով կամ գրուածքով զքեզ կը զրպարտէ՝ անիկայ խօսքով կամ գրով վա՞ր պիտի զարնես : — Չէ. քու զըրպարտիչներդ պատասխանի ալ արժանի մի սեպեր, ու քանի մը մասնաւոր պարագաներէ դուրս (որ մէկիկ մէկիկ որոշելը անկարելի է) անզգամին դէմ համբերութիւնդ մի հատցըներ. մի սպառնար իրեն, մի նախատեր զինքը : Քաղցրութիւնը երբոր առաքինութիւն է, և ոչ արխական զգացմունք ունենալու անկարողութիւն, միշտ իրաւունք ունի : Անիկայ աւելի դիւրաւ կրնայ ուրիշը ամբարտա-

ւանութիւնը խոնարհեցընել, քան թէ բարկասիրտ ու արհամարհոտ մարդուն կայծակներ թափող Ճարտասանութիւնը։

Ցուցուր միանգամայն թէ քու հեզութիւնդ ոչ ցածութիւն է և ոչ անկարողութիւն. աս բանիս համար ինքզինքդ ծանր բռնէ անզգամներուն դիմացը, անոնց չարութիւնները մի գովեր, անոնց քեզի հաւնելուն մի փափաքիր, անոնց մեղադրանքներէն վախնալով քու բարեպաշտութիւնդ ու պատիւդ մի ձգեր։

Թշնամիներ ունենալը մտածելու ինքզինքդ վարժեցուր, բայց անով մի խռովիր։ Մէկ մարդ մը չկայ որ ո՛րչափ ալ բարեգործ, պարզսիրտ, անմեղ ըլլայ՝ քանի մը թշնամի չունենայ։ Նախանձը այնպէս բնութիւն դարձած է քանի մը ողորմելի մարդկանց, որ աղէկ անուն ունեցող մարդու մը դէմ առանց արհամարհանք ու սուտ ամբաստանութիւններ ընելու՝ չեն կրնար կենալ։

Սիրտ ըրէ հեզահոգի ըլլալու, ու սրտանց թողութիւն տուր այն խեղճերուն որ կամ գիտաս կ՚ընեն և կամ գիտաս կ՚ուզեն ընել քեզի ։ " Թողութիւն տուր, չէ թէ եօթն անգամ եօթը հեղ, ըսաւ Փրկիչն մեր, հապա եօթանասուն անգամ եօթը հեղ ,, ․ այսինքն անսահման կերպով ։

Մենամարտութիւններն ու ամէն տեսակ վրէժխնդրութիւնները անվայել խենդութիւններ են ։ Ոխակալութիւնը հպարտութեան ու ցածութեան խառնուրդ մըն է ։ Քեզի դէմ եղած անիրաւութեան մը ներելովը կրնաս թշնամիդ բարեկամ դարձընել, աւրուած մարդը ուղիղ մտածութեան դարձընել ։ Ո՛հ, ի՜նչ գեղեցիկ ու մխիթարական յաղթանակ է աս յաղթանակը ․ ո՛րչափ աւելի մեծ ու գերազանց է՝ քան թէ վրէժխնդրութեան սոսկալի յաղթանակները ։

Եւ թէ որ քեզի դէմ անիրաւութիւն ընող ու քեզմէ ներումն

դատողը անհաշտելի մնայ, ու զքեզ նախատելով տպրի ու մեռնի, դուն աղէկ ըլլալովդ ի՞նչ կորսնցուցիր։ Ինքզինքդ վեհանձնութեան մէջ պահելու ուրախութիւնը ձեռք ձգեցիր, որ ամէն ուրախութենէ վեր է։

## ԳԼՈՒԽ ԼԱ.

### Արիութիւն ։

Մի՛շտ արիութիւն․ առանց ասոր առաքինութիւն չկայ։ Արիութի՛ւն պէտք է որ անձնահաճութեանդ յաղթես ու բարեգործ ըլլաս․ արիութիւն պէտք է որ ծուլութեանդ յաղթես ու ամէն պատուաւոր ջանքերուդ մէջ առաջ երթաս․ արիութիւն պէտք է որ հայրենիքդ պաշտպանես ու տեղը գալուն պէս ո՛ր և իցէ մարդու տէր կենաս․ արիութիւն պէտք է որ չար օրինակի ու անիրաւ ծաղրածութեան դէմ դիմանաս․ արիու-

թիւն պէտք է որ հիւանդութիւն ու ամէն տեսակ վիշտ և նեղութիւն քաշեմ՝ առանց վատ գանգատներու. արիութիւն պէտք է որ անդադար ետեւէ ըլլաս այն կատարելութեան՝ որուն հասնիլը կարելի բան չէ աս աշխարհիս վրայ. բայց թէ որ հասնելու չաշխատինք, Աւետարանին վսեմ իմաստին ըսածին պէս՝ մեր ամէն ազնուութիւնը կը կորսնցընենք ։

Որչափ ալ սիրելի ըլլան քեզի քու ժառանգութիւնդ, պատիւդ, կեանքդ, միշտ պատրաստ եղիր ամէնն ալ զոհելու պարտքերուդ կատարմանը՝ թէ որ այնպէս հարկ ըլլայ ։ Կա՛մ ան է որ մարդս աւելի յանձն պիտի առնէ աս կերպով ինքզինքը ուրանալ, ու ամէն երկրաւոր բարիքներէ հրաժարիլ՝ քան թէ անոնց կապուելով անիրաւ ու անզգամ ըլլալ. կամ ան է որ մարդըս ոչ միայն դիւցազն չէ, այլ նաև հրէշ կրնայ դառնալ. “ Վասն զի
,, ոչ երբէք կրնայ մէկը արդար ըլ-
,, լալ՝ քանի որ մահուընէ. ցաւէ,

„ աքսորանքէ, կարօտութենէ կը
„ վախնայ, կամ թէ ատոնց ներ-
„ հակ եղած բաները արդարու-
„ թենէն վեր կը դնէ „ կ՚ըսէ Կի-
կերոն * ։

Անցաւոր բարիքներուն վրայ չկառուցուած սրտով ապրիլը, ոմանց անանկ կ՚երեւնայ թէ խիստ վայրենի ու անգործադրելի խրատ է։ Եւ սակայն ճշմարիտը աս է որ ինչուան որ այն բարիքներուն վրայ անտարբեր աչքով մը չնայինք՝ ոչ ինչպէս որ պէտք է նէ ապրիլ կը գիտնանք, և ոչ մեռնիլ։

Արիութիւնը մարդուս սրտին ոյժ պիտի տայ ամենայն առաքինութեան ձեռք զարնելու. բայց նայէ որ չափը անցնելով յանդըգնութիւն ու կատաղութիւն չդառնայ։

Անոնք որ կարծեն .կամ կարծել կը ձեւացընեն թէ արիութիւնը հեզութեան հետ չկրնար յարմարիլ, անոնք որ վարժած են սանկ կ՚ընեմ

* Ցղ. Պաշտ. Գիրք Բ. Գլ. Թ։

նանկ կ՚ընեմ ըսելով մեծ մեծ ջարդելու, կռիւ ընելու, խռովութեան ու արիւնհեղութեան ծարաւ ցուցնելու, ՚ի չարն կը գործածեն այն սրտի ու ձեռքի ոյժն որ Աստուած տուեր է իրենց մարդկային ընկերութեան օգտակար ու բարի օրինակ ըլլալու համար ։ Եւ սովորաբար ծանր վտանգներու մէջ անոնք աւելի վախկոտ կը գտնուին. իրենք զիրենք ազատելու համար կրնան ինչուան իրենց հայրն ու եղբայրները մատնել ։ Զօրքի մը մէջէն ամենէն առաջ ձգող փախչողները անոնք են՝ որ իրենց ընկերներուն երեսին գոյնը նետած տեսնելով ծաղր կ՚ընէին, ու թշնամւոյն վրայ նախատական խօսքերով կը խրոխտային ։

# ԳԼՈՒԽ ՎԵՐՋԻՆ

Կենաց վրայ համառօտ, և մտածելու արժանութեան :

Շատ գրքեր կան որ մարդուս բարոյական պարտքերուն վրայ շատ աւելի ընդարձակ ու փառաւոր կերպով կը խօսին . ես՝, ով պատանի, միտքս դրի որ քեզի պզտիկ դասատետր մը ընծայեմ որ անոնք ամէնն ալ համառօտ կերպով մը միտքդ ձգեն :

Հիմա աս ալ աւելցնեմ որ այն պարտքերուն ծանրութենէն պէտք չէ վախնանք . ծոյլ ու վատ մարդիկներուն միայն է որ անտանելի կ'երեւնան : Մենք յօժարութիւն ունենանք աղէկ ըլլալու, կը տեսնենք որ ամենայն պարտուց մէջ գաղտնի գեղեցկութիւն մը կայ որ զմեզ կը հրաւիրէ զինքը սիրելու . կ'իմանանք որ զարմանալի զօրութեամբ մը ուժերնիս կ'աւելնայ՝ քանի որ

առաքինութեան խորտուբորտ ճամբուն մէջ առաջ երթանք . կը հասկընանք որ մարդս ինչ որ կը կարծուի անկէց շատ աւելի է , միայն թէ ուզէ , ու զօրաւոր կերպով ուզէ իր վախճանին բարձր նպատակին հասնիլ , որ է ամենայն անարգ յօժարութիւններէ մաքրուիլ , աղէկները վերջի աստիճանի ջանքով 'ի գործ դնել , և աս կերպով արժանի ըլլալ յաւիտեան ժառանգելու զԱստուած :

Սիրէ կեանքդ . բայց անոր համար մի՛ սիրեր որ հասարակ հեշտութիւններ ու խեղճ փառասիրութիւններ վայելես : Սիրէ կեանքըդ՝ մէջը եղած հարկաւոր , մեծ և աստուածային բաներուն համար: Սիրէ կեանքդ , վասն զի առաքինութեան ասպարէզ մըն է՝ Աստուծոյ սիրելի , Աստուծոյ փառացը պատճառ . մեզի ալ փառաց և օգուտներու պատճառ : Սիրէ կեանքըդ , թէպէտ և շատ վշտեր ալ ունենայ , մանաւանդ թէ այն վշտերուն համար ալ , վասն զի անոնք

են որ մարդուս կեանքը կ'ազնուացընեն, անոնք են որ կը բողբոջեն, կ'աճեցընեն ու պտղաբեր կ'ընեն մարդուս հոգւոյն մէջ վեհանձնական մտածութիւններն ու ընտիր ընտիր յօժարութիւնները ։

Աս կեանքս որ այնչափ համարում պիտի ունենաս վրան՝ մի մոռնար որ քիչ ատենի համար տրուած է քեզի ։ Նայէ որ չափազանց զուարճութիւններու չմխես ։ Այնչափ ուրախութիւնը միայն ըրէ, որչափ որ հարկաւոր է քու առողջութեանդ և ուրիշի մխիթարութեանը համար ։ Մանաւանդ թէ քու ուրախութիւնդ մասնաւոր կերպով քու պարտքերդ լաւ կատարելուն վրայ ըլլայ․ որ են՝ ուրիշներուն վեհանձնական եղբայրութեամբ ծառայել, Աստուծոյ որդիական սիրով ու հնազանդութեամբ ծառայել ։

Վերջապէս աս կերպով կեանքդ սիրէ, բայց գերեզմանդ ալ մտածէ որ քեզի կը սպասէ ։ Մեռնելու հարկը մտածել չուզելը՝ աղէկ

ըլլալու ջանքին վնաս կ՚ընէ ։ Չըլլայ թէ քու յանցանքովդ այն ահաւոր վայրկեանը շուտով հասցընես․ բայց միանգամայն չըլլայ թէ վատութեան համար ուզես անիկայ քեզմէ հեռու բռնել ։ Կեանքդ դիր ուրիշներուն փրկութեանը համար , թէ որ հարկաւոր է , մանաւանդ հայրենեացդ փրկութեանը համար ։ Ի՛նչ տեսակ մահ ալ պահուած ըլլայ քեզի՝ պատրաստ եղիր քաջութեամբ ընդունելու և Հաւատոյ ամենայն սրբութեամբն և ուժովը սուրբ մահ ընելու ։

Այս ամենայն խրատներս պահելով կ՚ըլլաս իրաւցընէ ընտիր մարդ , ընտիր քաղաքացի , ու բառերուն ամենավսեմ իմաստներուն նշանակութեանը պէս ․ օգտակար կ՚ըլլաս ուրիշներուն , ու ինքզինքդ երջանիկ կ՚ընես ։



# ՑԱՆԿ


Յառաջաբան . . . . . . 5
Մատենագիրն . . . . . . 9
Գլ. Ա. Պարտքին հարկաւորութիւնն ու պատուականութիւնը . . . . . 11
Գլ. Բ. Սէր Ճշմարտութեան . 14
Գլ. Գ. Աստուածպաշտութիւն . . . . . . 20
Գլ. Դ. Աստուածպաշտութիւն։ — Քանի մը վկայութիւններ. . . . . 24
Գլ. Ե. Հաւատոյ վրայ առաջադրութիւն . . . . 32
Գլ. Զ. Եղբայրսիրութիւն կամ Մարդասիրութիւն . 37
Գլ. Է. Մարդուս վրայ լաւ համարմունք . . . . 43

Գլ. Ը. Սէր հայրենեաց . . 50
Գլ. Թ. Ճշմարիտ հայրենասէր . . . . . . . 57
Գլ. Ժ. Որդիական սէր . . 60
Գլ. ԺԱ. Ծերոց և Նախորդաց մեծարանք . . . . . 67
Գլ. ԺԲ. Եղբայրական սէր . 74
Գլ. ԺԳ. Բարեկամութիւն . 79
Գլ. ԺԴ. Ուսմունք . . . 87
Գլ. ԺԵ. Վիճակի ընտրութիւն . . . . . . 94
Գլ. ԺԶ. Սրտի անհանգստութեանց դէմ . . . . 98
Գլ. ԺԷ. Զղջումն և Ուղղութիւն . . . . . . 103
Գլ. ԺԸ. Ամուրի կեանք . . 108
Գլ. ԺԹ. Պատիւ Կանանց. . 115
Գլ. Ի. Պարսաւելի սէր. . 123
Գլ. ԻԱ. Աղջկանց ու ամուսնացելոց մեծարանք . . 127
Գլ, ԻԲ. Ամուսնութիւն . . 132
Գլ. ԻԳ. Հայրական սէր ։ — Տղոց վրայ սէր. . . . 140
Գլ. ԻԴ. Հարստութիւն . . 144
Գլ. ԻԵ. Դժբաղդներու վրայ գութ. Բարերարութիւն. 152

ԳԼ. ԻԷ. Գիտութեան յարգը ճանչնալ . . . . . 161
ԳԼ. ԻԸ. Մարդավարութիւն. 167
ԳԼ. ԻԹ. Երախտագիտութիւն . . . . . . 171
ԳԼ. Լ. Խոնարհութիւն, Հեզութիւն, Անյիշաչարութիւն . . . . . . 175
ԳԼ. ԼԱ. Արիութիւն . . . 182
ԳԼ. ԼԲ. Կենաց վրայ համարում, և մեռնելու արիութիւն . . . . . 186

